# ՍԵՊՈՒՀ ՂԱԶ. ՄԻՆԱՍԵԱՆ

ԾԱՆՕԹՈՒԱԾ ԱԶԳԱՅԻՆ ՏԱՂԱՆԴԱՒՈՐ ՊՈՒԷՏՆ

ԵՒ

ԻՐ ԳՐԱԿԱՆ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## ՀԱՆԴԵՐՁ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՄԲ ԵՒ ՀԱԿԻՐՃ

ՏԵՍՈՒԹԵԱՄԲՔ

ԳՐԵՑ

Հ. ԲԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՅՈՒԽՏԷՆ



ՎԵՆԵՏԻԿ–ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1904

# ԸՆԾԱՅԱԿԱՆ

Քեզ, ծածկուած պուետդ՝ Սեպուհ Մինասեան, որ զգայուն սրտիդ քնարին թրթռումանց յարմարցնելով ճարտար գրիչդ՝ գիտցար յարգել քեզի տրուած գեղեցիկ դպրութեան տաղանդը, և անդրէն երախտագիտութեամբ և գեղեցկագիտական ճոխ տոկոսեօք քու մտքիդ նախկին մշակներուն վերադարձնել, կը նուիրեմ սոյն գրքոյկը՝ իբրև զքոյս ի քոյոց՝ քեզ մատուցուած. բայց և՛ մամլոյ համատարած թռիչներ առած, որով պիտի հասնի ի սփիւռս համազգեացդ: Փափաքելի է ինձ, որ իբրև գրագէտ՝ դո՛ւ ևս յիշուիս այսուհետև զոյգ ընդ Մ. Պէշիկթաշլեանի, Պ. Դուրեանի և նմանեաց, տաճկահայ նոր գրականութեան մէջ. դո՛ւ, որ անոնցմէ աւելին գրեցիր: Ասով քու գրագիտական յիշատակդ յարգել ուզած ժամանակ, կը յուսամ քուկիններուդ և հաճոյքներուն ազնուագոյնը ընձեռած ըլլալ:—

# ՍԵՊՈՒՀ ԼԱԶ· ՄԻՆԱՍԵԱՆ

## ԾԱԾԿՈՒԱԾ ԱԶԳԱՅԻՆ ՏԱՂԱՆԴԱՒՈՐ ՊՈՒԷՏՆ

## ԵՒ

## ԻՐ ԳՐԱԿԱՆ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ՄՈՌԱՑՈՒԹԻՒՆՆ *է ժամանակի այն ապերախտ ծնունդը, որ ազգային գործիչներու անհատական կեանքին հետ՝ գործերն ևս կը թաղէ երբեմն գերեզմանին մէջ. ուզելով, գոգցես իմն, իր կապարեայ ձեռքովը կնքել անոնց բաղդի կափարիչը։ Վայ էր այդպիսեաց հետ՝ նաև յաջորդող սերնդեանը, եթէ չըլլային ուրիշ բարերար և պրպտող ձեռքեր, որ մէկդի նետելով մոռացութեան այդ կափարիչը՝ վերայայտնէին զանոնք և ի նոր կեանս կոչէին։ Այո՛, անհատները մեռնելու դատապարտուած են ի բնէ, բայց ոչ երբէք անոնց գործերը. մանաւանդ գրաւորները, որոնք ազգի մը ապագայ ժառանգութիւնը կազմելու սահմանուած են։ Խօսքս ԺԹ դարու մոռցուած՝ բայց տաղանդաւոր գրագէտի*

մի վրայ է, այն է՝ ՍԵՊՈՒՀ ԼԱԶ. ՄԻՆԱՍԵԱՆ, որ պիտակ անուամբ Խոսրով Պէյ եւս կոչուած է երբեմն՝ իր գրուածոց մէջ։

Այս անունը լսելով այսօր Պոլսեցի ծերունիները՝ պիտի յիշեն անշուշտ ժամանակակից նշանաւոր դէմքերէն մինը։ Բայց զարմանալի առեղծուած մը կ՚երեւի մեզ այն լռութիւնը, զոր պահած են մեր նոր գրականութեան ոչ միայն երիտասարդ՝ այլ և ալեզարդ գրագէտները անոր մասին։ Նա արժանի էր՝ ոչ միայն իբրեւ գրագէտ՝ յիշուելու, այլ և շատերէն վեր դասուելու։ Ժամանակին՝ անոր բանաստեղծութիւններէն թերեւս նմոյշներ տպուած ըլլան Կ. Պոլսի ազգային թերթերու մէջ. բայց եօթանասնական թուականէն առաջին ես չեմ յիշեր, որ անոր կամ իր բազմատեսակ գրուածոց վրայ խօսած ու գրած ըլլայ մէկը, ըստ արժանւոյն։

Մինասեանը՝ 1825ին, Օգոստ. 11, ծնած է ի Կ. Պոլիս։ Այդ քաղաքի կաթողիկեայ հայ հասարակութեան բարեկիրթ ընտանիքներէն միոյն կը վերաբերէր։ Յամին 1838 Եւրոպայ ղրկուելով մտած է Ռափ. վարժարանը, ուր առած է իր ուսումն ու կրթութիւնը. և 1841ին Յունիսի աւարտած։ Գերպ. Սօմալեան, առ այլ և այլ

անձինս գրած նամակներուն մէջ, կը յիշէ և կը գովէ Մինասեանը՝ ուսմանց և բարի վարուց մէջ։ Նա. յ8 Նոյեմ. 1839, Հետեւեալը կը գրէր Հ. Փիլիպպոս Թէրճիմանեանին, որ այդ պատանին յղած էր Վենետիկ, և կը հետաքրքրուէր անոր հեռաւոր ապագայովը. « Մինասեանդ Սեպուհ յառաջադէմ և գովելի ընծայի յուսմունս և ի բարի վարս։ Գոհ են զնմանէ վարժիչք. և ես ուրախ եմ, զի փորձիւ տեսի զյառաջադիմութիւն նորա, մանաւորապէս ի գաղղիարէն լեզուի հրահանգս և ի նկարչութեան[1]։ Այսպէս աւետիս տուր հօր նորա՝ իմոյս խանդակաթ ողջունիւ »։

Մինասեան, Ռափ. վարժարանէն Պոլիս դառնալէն քիչ վերջ, իբրեւ պաշտօնեայ մտած է տէրութեան Զարբխանէն, ուր արդէն իր հայրը՝ Յովսէփ աղա մեծ՝ պաշտօն մը կը վարէր։ Յովհաննէս Մինասեան՝ ինձ տուած տեղեկութեանց մէջ, կ'ըսէ, իր հօրեղբօր Սեպուհ Մինասեանի համար՝ թէ իբրեւ կա-

1. Ըստ վկայութեան Օսմ. գեաղապանին՝ Մանասուր Պէյի, որ ի Վիեննայ, նա նշանաւոր նկարիչ եղած էր, և 1868ին Դօլմապախ ամարանոցին մէջ հիւր եղած ժամանակ՝ նկարած էր աւստրիացի զօրապետին այրի կնոջը Մարի տիկնոջ դէմքը։

ռավարական պաշտօնեայ՝ ասկէ զատ ուրիշ պաշտօն վարած չէ նա. այլ մինչեւ իր մահը իր այդ պաշտօնին մէջ մնացած է։ Սակայն մեր գիտցածին համաձայն — որուն կը ձայնակցին և գրուածք — գաղղիարէն լեզուն, որուն քաջ հմուտ էր նա, այսպէս նաեւ անձնական համակրելի բարեմասնութիւնքը քաղաքական ասպարէզն եւս կը բանային իր առջեւ։ Եւ ստուգիւ՝ Յեպաւհ ինքնին իր անտիպ վէպերէն միոյն մէջ (այն է՝ Իմ չիբէ դիմ) կ'ըսէ՝ թէ յամին 1863, Օսմ. Դեսպանի Քարտուղարութեան պաշտօնով, կը ղրկուէր նա Պարիզ, ուր կը կենար մինչեւ 1868 Թուականը։ Այդ ժամանակ՝ նա ոչ միայն կը ծանօթանար մայրաքաղաքի քաղաքային և ազնուական դասակարգին, այլ և սերտ և սիրային բարեկամութիւն կը հաստատէր Մաթիլտէ անունով օրիորդի մը հետ։ Մինասեան իր կենաց այդ շրջանը՝ իր կեանքի է'ն երջանիկը կը համարի։ Մինասեանի կենաց այս և այսօրինակ մէկ երկու՝ դէպքեր կը յիշեմ անցողաբար, միայն կենսագրական ճշդութեան համար։ Իմ նպատակս է իր ներքին կենաց մանրամասնութիւններէն աւելի, գրուածոց մէջ նշանաւոր վիպասանական տաղանդը դուրս ցատքեցնել։

1868 Թուականին՝ արտաքին գործոց Նախարարի կողմէն՝ յանկարծ կը կանչուէր հեռագրով ի Պոլիս։ Այս կոչս մեծ վիշտ կը պատճառէր Մինասեանին, այնու մանաւանդ՝ որ նա յոյժ սիրած էր պարիզեան կեանքը։ Սակայն հարկ էր մեկնիլ։

Վիեննայէն անցած ժամանակ՝ Օսմ. Դեսպանին, Մանսուր Պէյի, հրաւիրանօք Դօրմպախ գիւղը կ'երթար. ուր Սալզպուրկի պատերազմին մէջ ինկնող Աւստրիացի հարիւրապետի մը չքնաղտգեղ այրիին Մարիի ամարանոցին մէջ ամսօրեայ ժամանակով հիւրընկալուիլն և սիրահարական միջադէպը՝ տխուր մանրավէպի մը նիւթը կը կազմէին, զոր նա 1874ին ի գրի առած է՝ իր հեսը թերած ամենայն աղէտներով։

Պոլիս հասնելէն վերջ՝ արտաքին գործոց նախարարը կը յայտարարէր Մինասեանին, որ, Պարսկաստանի սահմանաց վերաբերեալ խնդիրն որոշելու համար, տէրութեան կողմէն քննիչ յանձնաժողով մի կարգուած էր, որուն ինքը պիտի նախագահէր։ Հրամանագրին հետ քսակ մ'ոսկի ալ իրեն տալով կ'ըսէր, որ շուտով մեկնելու եւ։ Տարի մը Պարսկաստանի և Թիւրքիստանի սահմանները (այսինքն՝ Կարս) զննեւեղեն վերջ, սոյն պաշտօնով, կը

վերադառնար Մինասեան ի Պօլիս. և անտի կը փութար ի Դօրմպախ, յուսով՝ գտնելու իր սիրած աղջիկը Մարի, և արդէն մտքին մէջէն ամուսնանալու գաղափար մը կ'անցնէր, բայց առանց գործադրութեան կը դառնար իր հայրենիքը. ուր վերստին կը հաստատուէր դրամհատութեան նախկին պաշտօնին մէջ։ Այդ ուղևորութեան ժամանակ՝ նա այցելած է Նեապօլիս, Վենետիկ և Իտալիոյ ուրիշ քաղաքներն ևս, զորս կը յիշէ դրուատեօք՝ իր Այկիօն վէպիկին մէջ։

Ազգային ժողովոց ևս երբեմն մասնակից եղած է. և կ'ըսուի՝ թէ հասունեան ջերմ խնդրոց ժամանակ՝ նա Հակհասունեանց դըլխաւորներէն մին եղած ըլլայ։

Սեպուհ Մինասեանը՝ բնութեամբ բանաստեղծ ծնած ըլլալով, կեանքն ևս ըստ այնմ անցուցած է, մանաւանդ երիտասարդական առոյգ հասակին և եռանդանը մէջ։ Եռանդոտ էր, ինչպէս ինքը կը վկայէ, արիւնոտ և գղրգխնը և խօսիլ սիրող։ Ազնիւ կերպ և հրապուրիչ լեզու մ'ունէր, որով օձն ալ իր ծակէն դուրս կը հանէր։ Ասպետական ձգիչ ձիրքերով օժտուած էր նա. անոր համար՝ որոնք որ սիրած է երիտասարդական խանդով, նոյնները յաւերժացնել ուզած է նոյն-

պէս իր բեղմնաւոր գրչովն ու բանաստեղծա-
կան հանճարովը. յօրինելով անոնց վրայ
սիրային ու գողտրիկ մխիթարութիւններ և
կամ եղերգներ. իսկ մնացած քերթուած-
ներն — որոնք մինչև 1882 թուականը կը
հասնին — անոր հաւատարիմ արձագանգը
կու տան գրէթէ ամէն էջերում։

Այս հանգամանքներով և բնաւորութեամբ
հանդերձ՝ Սեպուհ, իր հասուն հասակին մէջ,
աւելի քաշուած կեանք անցուցած է. բնա-
կելով փոփոխակի մերթ Թարապիա, մերթ
ի Քաղկեդոն և մերթ ի Պերա, իր սիրելի
քոյրերուն հետ։ Իսկ կենաց վերջին տարի-
ները՝ Վոսփորի վրայ, Ենի — գիւղը, իր եղ-
բօր Յակոբ Պէյի տանը մէջ կ'անցնէր։ Հոն
ալ մեռած է 1887ին, և թաղուած Ենի —
գիւղի բարձանց վրայ, այսինքն է՝ ազգային
գերեզմաննացը։

Իր գրասէր ու գրօսասէր կեանքին հա-
մաձայն՝ Պոլսի բոլոր շրջակայ գեղեցկու-
թիւնները այցելած ու վայելած էր. ընտա-
նեաց և ընկերութեանց մէջ յաճախած, և
ամէն դէպքերու և վէպերու տեղեակ։ Պէ-
շիքթաշլեանէն և Դուրեանէն շատ աւելի
արկածախնդիր և ընկերական լինելով, ոչ
միայն օտար երկիրներում բարեկամութիւն-

ներ հաստատելու հմայքն ունեցեր էր, այլ և Պոլսի և անոր արուարձաններու մէջ բազմաթիւ և բարեկիրթ բարեկամներ ունեցած։ Որպիսիք են Գրիգոր էֆ. Կեօչեան, զոր ինքը քաջ նկարիչ կ'անուանէ և կը գրուատէ, — Մէշիք Բժիշկը, — Համտի Պէյ, — Սիմոն էֆէնտի, — Վարդան Պէյ՝ զոր իբրև ուսուցիչ և ազգային գործիչ կը ներբողէ, և ուրիշ շատեր, յորս և ազնուազգի Տիկնայք։ Կ'ըսուի՝ թէ Մինասեան՝ հանգուցեալ բանաստեղծ և մեծ Դերասան՝ Պետրոս Ադամեանի հետ ևս սերտ բարեկամութիւն հաստատած էր, ասոր Ռուսաստանէն Պոլիս վերադարձած միջոցին։

Երջանիկ էին Սեպուհ Մինասեանի բարեկամները. վասն զի՝ սա հաւատարիմ էր միշտ դէպ ի անոնք տածած սիրոյն և յարգանաց մէջ։ Որդի և կին չունենալով, ոչ միայն բոլոր իր սիրտը անոնց կու տար. այլ նաև իր բանաստեղծական երգերովն ու մխիթարականներով ընդհանրապէս զիրենք անմահացուցած է։ Ազնիւ և յոյժ զգայուն սիրտ մ'ունէր նա, մանաւանդ դէպ ի նեղուածներն և արկածեալները։ Հետևաբար՝ իր վշտացեալ բարեկամներուն ոչ միայն խորհրդով և նիւթական միջոցներով

օգնութեան կը հասնէր, այլ և իր թանկագին կեանքն իսկ երբեմն վտանգի կ'ենթարկէր՝ զանոնք ազատելու համար։ Նոյն իսկ տկար սեռէն, իրեն վստահացողները կը, գըտնէին յամենայն դէպս և՛ պաշտպանութիւն և՛ մխիթարութիւն, իրենց բարոյական անկումին և կամ անիման վտանգներուն մէջ։

Ստոյգ է, որ Մինասեան բաց ի բանաստեղծէ, վիպագրողէ և թատրերգակ քերթողէ՝ եղած է նոյնպէս քաջ որսորդ [1], խիստ վարպետ ձկնորս, և ճաշակաւոր ու ճարտար նկարիչ։ Ինքն իսկ կ'ըսէ, թէ իր ան-

1. Որուն համար այսպէս կը գրէ իր «Ալկիօն» վիպագրութեան մէջ. «Ի սկզբանէ ի վեր որսորդութիւնն իմ ամենասիրուն զբօսանացս մէկն եղած էր. երբ համբորդութեանցս պարապ թողած ժամանակին ի Պօլիս կը գտնուէի, երբէք առիթ չէի փախցըներ, ու ի շաբաթն քանի մի անգամ բարեկամ ընկերաց հետ ցյագ կը պարապէի։ Արդարեւ ինչ զուարճալի զբաղանք, երբ հրացանդ ուսիդ՝ լերանց վրայ արշալուսին կը շրջագայիս. զոյգ մի ընտիր և ճարտար շուներ բոժոժը հնչեցնելով՝ ժիր ոտիւք աստ անդ կը խուզեն, դուալ աչքդ տնկած ամէն վարկենին, կը յուսաս՝ որ առջեւէդ կաքաւ կամ պէքաս մի սլանայ, կամ նապաստակ մի ոստնու ...»։

Իսկ իրեն որսատեղիքն էին ընդհանրապէս Ռիվայ (Սեւ ծովու հիւս. կողմանքը) Քօճա–Տերէ, և Փենտիկ, և Բաշալիման։

մեզ զբօսանքն էին ուղեւորութիւն, նկարչութիւն և որսորդութիւն։ Սակայն այս վերջին արուեստներուն երկրորդաբար միայն զբաղած է նա. հետեւաբար մենք ալ առաջին տեսակէտով, այսինքն է՝ իբր վիպասան և թատերգակ քերթող պիտի ներկայացնենք զինքը։

Մինասեան իր մայրենի լեզուին հաւասար՝ հմուտ էր նաեւ գաղղիարէն, իտալերէն, անգղիարէն և տաճկերէն լեզուաց։ Մէկ կողմէն շնորհիւ այդ լեզուներուն, և միւս կողմէն ալ ազատ լինելով ընտանեկան կապերէն և առտնին հոգերէն, առիթ կ'ունենար բոլորովին անձնատուր ըլլալու գեղեցիկ դպրութեանց. շփուելու մօտէն ազգային կեանքին և օտար գրագէտներուն հետ։ Այս կերպով մարզելով իր ճաշակն ու հանճարը, կը զգար վերջին աստիճան դիւրութիւն[1] մը՝ ոչ միայն թարգմանելու, ճշտութեամբ և ճարտարութեամբ, գաղղիացի և իտալացի բանաստեղծներու թատերական նշանաւոր գործերը, այլ և շարադրելու և քերթելու զանազան տեսակի վերաբերեալ բազմաթիւ բանաստեղ-

1. Սեպուհ իր ընդարձակագոյն թատերգութիւններէն միոյն համար կը վկայէ, թէ 15 օրուան մէջ շարադրած էր։

ծութիւններ։ Մինասեանի, թէ՛ թարգմանածոյ և թէ ինքնագիր, երկասիրութիւնները՝ գրեթէ բոլո՛րն եւս Պոլսի ժամանակակից գրագիտաց յատուկ աշխարհաբառ լեզուովը գրուած են. մաս մը՝ ոտանաւոր, և մեծագոյն մա՛ս մ՚ալ արձակ շարագրութեամբ։ Ամենուն մէջ եւս մաքուր լեզուին հետ կը փայլին նոյնպէս բանաստեղծութիւն և գեղեցկագիտական ճաշակ։ Թարգմանութիւններէն, գէթ մի քանին, ժամանակաւ երիցագոյն են՝ քան ինքնագիր գործերը։ Այնպէս որ՝ Սեպուհ Մինասեան վերջինները դեռ չի յղացած, իրեն իւրացուցած էր արդէն Վիկ. Հիւգոյի և Հուգոյ Ֆոսկոլոյի գաղափարները, աշխոյժն ու ոճը. այսինքն է՝ միոյն ռոմանդիկ և միւսին կլասիկական մտածութեան ձեւերն ու նկարագիրքը։ Ջի երկու քերթողաց ը՛նապրոշմն եւս կը տեսնուի Մինասեանի երկասիրութեանց վրայ, իր տաղանդաւոր մտքի և հայկական կեանքի յատուկ յեռումներովը շքեղացուցած։

Մինասեանի մեզ ծանօթ երկասիրութիւններն են հետեւեալները, զորոնք, նիւթոյ կամ տեսակաց համաձայն, կը ջանանք դասաւորել, այսպէս, նշանակելով միանգամայն անոնց աշխատասիրութեան տարեթիւերը, քանակը, և պարունակութիւնքը։

մեզ զբօսանքն էին ուղեւորութիւն, նկարչութիւն և որսորդութիւն։ Սակայն այս վերջին արուեստներուս երկրորդաբար միայն զբաղած է նա. հետեւաբար մենք ալ առաջին տեսակէտով, այսինքն է՝ իբր վիպասան և թատերգակ քերթող պիտի ներկայացնենք զինքը։

Մինասեան իր մայրենի լեզուին հաւասար՝ հմուտ էր նաեւ գաղղիարէն, իտալերէն, անգղիարէն և տաճկերէն լեզուաց։ Մէկ կողմէն շնորհիւ այդ լեզուներուն, և միւս կողմէն ալ ազատ լինելով ընտանեկան կապերէն և առտնին հոգերէն, առիթ կ՚ունենար բոլորովին անձնատուր ըլլալու գեղեցիկ դպրութեանց. շփուելու մօտէն ազգային կեանքին և օտար գրագէտներուն հետ։ Այս կերպով մարզելով իր ճաշակն ու հանճարը, կը զգար վերջին աստիճան դիւրութիւն[1] մը՝ ոչ միայն թարգմանելու, ճշտութեամբ և ճարտարութեամբ, գաղղիացի և իտալացի բանաստեղծներու թատերական նշանաւոր գործերը, այլ և շարադրելու և քերթելու զանազան տեսակի վերաբերեալ բազմաթիւ բանաստեղ-

1. Սեպուհ իր ընդարձակագոյն թատերգութիւններէն միոյն համար կը վկայէ, թէ 15 օրուան մէջ շարադրած էր։

ծութիւններ։ Մինասեանի, թէ՛ թարգմանածոյ և թէ ինքնագիր, երկասիրութիւնները՝ գրեթէ բոլո՛րն եւս Պօլսի ժամանակակից գրագիտաց յատուկ աշխարհաբառ լեզուովը գրուած են. մաս մը՝ ոտանաւոր, և մեծագոյն մաս մ'ալ արձակ շարագրութեամբ։ Ամենուն մէջ եւս մաքուր լեզուին հետ կը փայլին նոյնպէս բանաստեղծութիւն և գեղեցկագիտական ճաշակ։ Թարգմանութիւններէն, գէթ մի քանին, ժամանակաւ երիցագոյն են՝ քան ինքնագիր գործերը։ Այնպէս որ՝ Սեպուհ Մինասեան վերջինները դեռ չի յղացած, իրեն իւրացուցած էր արդէն Վիկ. Հիւգոյի և Հուգոյ Փոսկոլոյի գաղափարները, աշխոյժն ու ոճը. այսինքն է՝ միոյն ռոմանդիկ և միւսին կլասիկական մտածութեան ձևերն ու նկարագիրը։ Չի երկու քերթողաց ընդպրոշմն եւս կը տեսնուի Մինասեանի երկասիրութեանց վրայ, իր տաղանդաւոր մտքի և հայկական կեանքի յատուկ յեռումներովը շքեղացուցած։

Մինասեանի մեզ ծանօթ երկասիրութիւններն են հետևեալները, զորոնք, նիւթոց կամ տեսակաց համաձայն, կը ջանանք դասաւորել, այսպէս, նշանակելով միանգամայն անոնց աշխատասիրութեան տարեթիւերը, քանակը, և պարունակութիւնքը։

## ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

1. *Տը Նովայլի կոմսուհին. — Թատերերգութիւն՝ հինգ արարուածով, թարգմանուած է 1862ին։*

2. *Մարի և Սիմոն. — Թատերերգութիւն հինգ արարուածով. գաղղիարէնէ թարգմանուած. դէպքն՝ 1781ին անցած է Նորմանտիոյ մէջ։*

3. *Կարմիր կամուրջ. — Թատերախաղ հինգ արարուածով. 1863ին թարգմանած է, բայց առանց նշանակելու՝ թէ ինչ բնագրէ ։*

4. *Ուիգարդոս. — Ողբերգութիւն՝ հինգ արարուածով. հեղինակութիւն Հուգոյ Փոսկոլոյի. 1862ին թարգմանուած։*

5. *Իվան Զ. արքայազն իշխան Ռուսիոյ. — Ողբերգութիւն՝ երեք արարուածով, հեղինակութիւն Շառլը Լաֆոնի. 1862ին թարգմանուած է։*

6. *Անճէլօ Մաչիքիերի՝ Պատուլայի բռնաւորը. — Թատերերգութիւն՝ երեք արարուածով, հեղինակութիւն Վիկ. Հիւգոյի. Թարգմանուած է 1862ին։*

## ԻՆՔՆԱԳԻՐ ՎԻՊԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1. *Վսեմ Աճեմեազուհի մը.* — 24 թերթերէ բաղկացած։ Գրուած է 1873ին, և ուղերձով մը ընծայուած է շնորհափայլ օրիորդ Նեկտար Կէօչեանին։ Վէպիս դիւցազն է պարկեշտագեղ տիկին Զարուհի, Պօլսի հայ կեանքէն առնուած։ Սա իր որդեսիրութեամբը — որուն համար կը համբերէ իր գաղատացի անբարոյական էրկան ամէն տմարդի վարմանցը — այսպէս նաեւ իր չքնաղ պարկեշտութեամբը կը յաղթէ վիպագրի խօլ տենչանքներուն, և կը փոխէ զանի յայր այլ, կը ներկայացընէ հայ կնկան ճշգրիտ նկարագիրը՝ բոլոր իր անուշաբոյր առաքինութիւններովը։ Ամուսնական հաւատարմութեան և սիրոյն ասկէ ալ գեղեցիկ օրինակ չէր կրնար տրուիլ հայանուշներուն։ Թողած տպաւորութիւնը խիստ խոր է և խօսուն. յաջողութիւնն ալ կրնանք ըսել կատարեալ։ Սեպուհի զգայուն սիրտն ու գրիչը ասկէ ալ գեղեցիկ, վսեմ և միանգամայն զողտրիկ բան չէին կրնար արտադրել։

2. *Աչկիոն՝* այս անուն շոգենաւի տիրոջ և իր մտերիմ բարեկամին Օկտաւի — զոր կարելի է նոր ոմն Վէրթէր անուանել — սիրավէպին

և մշտակրութեանց նկարագիրն է, զոր կ'ընէ Մինասեան, վէպս գրած է 1874ին, և 32 տող ոտանաւոր Ձօնով մը նուիրած է իր սիրուհւոյն Կիւլնարի։

3. Իշխանաց կղզւոյն մէջ ամառուան իրիկուն մը. — 20 թերթերէ բաղկացած գեղեցիկ ու վառվռուն սիրավէպ մ'է, գրած 1873ին, և ուղերձով մը նուիրած իր բարեկամ Գրիգոր էֆ. Կէօչեանին։ Սիրավէպիս դիւցազնուհին է՝ Ռումէնիոյ Քուզան իշխանի սիրուհին՝ Օլգա։ Ծննդեամբ գաղղիացի. որ Պոլիս եկած ժամանակ՝ Իշխանաց կղզւոյն մէջ կը բարեկամանար նաև վիպագրողին հետ։ Նա իշխանին գահընկեցութենէն վերջ՝ Քատիքէօյի՝ Սիոնի Քերց վանքը կը քաշուէր, ու կը մեռնէր հոն, սրտաշարժ զուգադիպութեամբ հին բարեկամին։

4. Ի՛h լիբէ դի՛h (Ես կը սիրեմ զքեզ). — 32 թերթերէ բաղկացած սիրավէպ մ'է, զոր գրած է 1873ին և 24 տող ոտանաւորով մը ձօնած իր վսեմ. բարեկամին՝ Օսման Համտի Պէյ էֆէնտիին, ուսկից և լսած կ'աւանդէ իր գրութեան նիւթը։ Սիրավէպիս դիւցազնուհին է Վիեննայի մօտ Դօրմբախ ամարանոցի ազնուական այրի տիկինը Մարի. որ — վէպաւանդողին հետ ունեցած սիրային

յարաբերութեանց առճառաւ, զոր ըստանձնած է քերթողը — կը կորսնցնէր իր երջանկութիւնն և թշուառութեան խորը կը գահավիժէր։ Կանացի տկարութեան ահաւոր օրինակ մ'ուզած է տալ ասով անշուշտ Սեպուհ։

5. *Նախախնամութեան մատը.* — Պատմական և եղերգական վիպագրութիւն մ'է, պօլսական կեանքէն. հանդիպած 1874ին, Աստղիկ տիկնոջ և ընտանեաց մէջ, որ ամբողջ Բերայի արուարձանքը և հայ հասարակութիւնը կը սոսկացնէր։ Վիպագրութիւնն ալ նոյն տարին աւարտած է Մինասեան. այսինքն է՝ փետրուարի 22ին։ 25 թերթերու մէջ ճարտարութեամբ նկարագրած է տափոտ կնկան մը ոճիրներն ու տխուր կատարածը։

## ԻՆՔՆԱԳԻՐ ԹԱՏՐԵՐԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1. *Մարի և Խոսրով.* — Եղերերգութիւն մ'է (Դրամ), հինգ արարուածով, արձակ. զոր գրած է 1870ին՝ ի Քաղկեդոն։ Կը բաղկանայ 40 թերթերէ, և Մինասեանի թատերգութիւններուն ամենէն սրտաշարժը, գլխաւորը, գեղեցիկն ու օգտակարը կրնանք անուանել։ Նիւթը Պօլսոյ ժամանակակից կեանքէն առնուած է. անձնաւորութիւնք —

բաց ի երկուքէն — ամէնքն ալ ազգային են. ուստի ըստ այսմ է նաեւ նկարագիրներու կարեւորութիւնը։ Այսինքն են՝ տարբեր բարք և բերմունք Մարիի, զինքը սիրող երկու երիտասարդներուն՝ Խոսրովու և Կոմնակին։ Մարի թեթեւ և յեղյեղուկ ըլլալով իր սիրոյն և զգացմանցը մէջ, վերջ ի վերջոյ Կոմնակի գեղեցկութիւնը՝ Խոսրովի ազնուութենէն նախապաս համարելով, ահաւոր և աղետալի ապագայ մը կը պատրաստէ թէ՛ իր և թէ բարեբարոյ Խոսրովի գլխուն. զորոնք հիանալի կերպով դուրս ցատկեցուցեր է մեր բանաստեղծը։ Կարելի չէ առանց արտասուելու աւարտել ընթերցումը։ Մարդ չի գիտեր, թէ որուն վրայ աւելի հիանայ. արդեօք, ունայնասէր աղջկան մը անկարծելի բարեփոխութեա՞նը, թէ խոհեմազարդ ու ազնիւ հայ երիտասարդի անփոփոխ պնդութեանն ու անյիշաչարութեանը։ Հեղինակը, կարծէք, մէկ խաղով՝ երկու դիւցազն ստեղծած է. բայց երկուքին մէջ իսկ քրիստոնէին առաքինութիւնն է որ կը յաղթանակէ։ Կրկնակի հրահանգիչ է ներկայացումս։

2. Հեղինէ. — Ողբերգութիւն մ՚է՝ հինգ հանդիսով։ Գրուած է 1862ին, և կը բաղկանայ 40 թերթերէ։ Յառաջաբանին մէջ,

իրաւամբ, կը ծանուցանէ հեղինակը, թէ ինքը պատմութենէ առած է, Հայաստանի վրայ իշխող, մակեդոնացի կուսակալին՝ Նէոպտողմէոսի, և հայկազն ընիկ տիրոջ՝ Արդուարդայ անուանքը միայն. իսկ մնացածն ամբողջապէս իր երեւակայութեան ծնունդ է։ Աղեքսանդրէն վերջ Հայոց ազատութեան դէպքն է, որ Մակեդոնացւոց դէմ լարուած կրկին կոտորածով կը կատարուի։ Ողբերգութիւնս կարելի է բոլորովին կլասիկ համարել, նման Վիկ. Հիւգոյի Les Burgraves (Լեռնական իշխանք Գերմանիոյ) Թատրերգութեան։ Նէոպտողմէոսի դստեր գեղանի Հեղինէին՝ Արդուարդայ որդւոյն՝ Արտաւազդայ հետ ունեցած սիրավէպով — որուն եղական յատկութիւն մը տրուած է — մեր բանաստեղծը աւելի բնական կերպով լուծած է իրարու ոխերիմ և դաւաճանող իշխաններու ատելութիւնը, քան Հիւգոյ՝ 40 տարի յառաջ Կիւֆհոսի մէջ խղդուող Փրեդերիկոս Շիկամորուսը և կուանումարան տեսարանի վրայ յանկարծ հանելով և մեռցընելովը։ Մէկ խօսքով հայութեան և հելլենականութեան հինաւուրց ատելութեան պայքարն է, որ սիրոյ ամոլին չքնաղ անձնանուիրութեամբը՝ հաշտութեան

կը փոխուի։ Յաղթանակողը կ'ըլլայ, վերջապէս, մայր հայրենիքը, տալով յանձին Արտաւազդայ շքեղ օրինակ հիւրասիրութեան և հաւատարմութեան. իսկ Հելէնէ և Նեոպըտողոմէոս կ'երդնուն՝ մնալ այնուհետեւ ի Հայս և գործել իբրեւ հայ։

3. Արմաւ Մարի. — Սիրային թատերախաղ մ'է, 1869ին գրուած, պօլսական կեանքէն։ 57 թերթերէ բաղկացած է, հինգ հանդիսով։ Ա, Բ, Գ. հանդէսները Պօլսոյ արուարձաններուն մէջ կատարուած են. Դրդը ի Բերա, և Երդը՝ յԱլէմտաղ։ Խաղին նիւթն է Մարի՝ իր երաժշտութեան վարժապետին՝ Արմանի հետ ունեցած սիրավէպովը։ Հայրը՝ Համբար, հին գաղափարներով և սովորութեամբ տոգորուած, կ'ուզէ իր 18ամեայ դուստրը բռնի ամուսնացնել իր 40ամեայ հարուստ, բայց բիրտ վաճառակիցին հետ։ Իսկ մայրը Շուշան՝ կը ջանայ տալ զանի Պարիզէն դարձող ազնուազգի՝ բայց թեթեւամիտ երիտասարդին. այն է փարթամ Ամիրայի որդւոյն Տիգրանին, զոր յոյժ կ'ատէ Մարի։ Շատ կնճռոտ է և հանգուցաւոր այս թատերախաղս. ուր գեղեցիկ և գիտաւոր կերպով ներկայացուցած է՝ հեղինակն՝ արեւելեան բռնի ամուսնութեան չար սովորոյթը։

Մարի մինչեւ վերջը ծածկելով ծնողքէն դէպ ի Արման տածած իր բուռն սէրը, կ'ատէ երկու հետամուտներն եւս, և կ'ընդդիմադրէ ծնողաց կամքին ։ Յովակիմ վաճառականը բոլոր շլացուցիչ իր ակունքներովը չյաջողիր գրաւելու Մարիին սիրտը ։ Արման, հետամուտերուն ուղղած անանուն նամակներովը, նախ կը գժտեցնէ զանոնք իրարու հետ. ապա մենամարտելով և վիրաւորելով իր ախոյեանը՝ Տիգրան, հակառակ ծնողաց կամքին կ'ամուսնանայ Մարիին հետ՝ փախստեամբ ։ Հինգ տարի Ալէմտաղ կ'ապրին երջանիկ կերպով, և կ'ունենան Վարդ և Միհրանիկ երկու հրեշտականման զաւակներ ։ Տիգրանն ալ հաշտուելով Արմանին հետ՝ կ'ըլլայ անոր հաւատարիմ բարեկամը ։ Հինգ տարիէն վերջ՝ Մարիի ծնողքը Ալէմտաղ գացած ժամանակ, աւազակներուն ձեռքը կ'իյնան. իսկ անակնկալ ժամու վրայ հասած Արման և Տիգրան, պատերազմելով կ'ազատեն ։ Անով կը հաշտուին անոնք իրենց դստեր և փեսային հետ, և տեսնելով անոնց երջանկութիւնը կը մխիթարուին ։ Ահա ազատ ճանաչմամբ եղած ամուսնութեան պտուղը, զոր բանաստեղծն՝ իրեն նպատակ դրած է, և ամենայն ճարտարութեամբ ներկայացուցած ։

4. *Սուտ փիլիսոփայք*. — Երկու արարուածով կատակերգութիւն մ՚է, նման Պարոնեանի «Մեծապատիւ մուրացկաններուն». որը, սակայն, աւելի նպատակայարմար է, և յաղթական վախճանով մը կը պսակուի։ Գրուած է 1862ին, և կը բաղկանայ 29-30 թերթերէ։ Արաքսիա՝ Ոսկինարի նուն՝ իր էրիկը Անդրանիկ՝ Գինիասէրաշատէս, Շատակերիտէս, Լայնստամոքօս և Թեթեւամիտոս սուտանուն իմաստակներու ձեռքէն ազատելու, և տան ստացուածքը ապրեցնելու համար, ճարահատեալ հետեւեալ միջոցին կը դիմեն։ Այսինքն՝ օր մը խնջոյքի հրաւիրելով, լաւ մը կը գինովցնեն զանոնք։ Անդրանիկ տեսնելով անոնց կռիւն ու յարուցած անպատեհութիւնները մէկ կողմէն, և միւս կողմէն ալ լսելով իր հօր յանդիմանութիւններն ու սպառնալիքը, սոսկումով խօսք կու տայ՝ բացէ ի բաց հրաժարել այդ խաբեբաներու ընկերակցութենէն, և հոգ տանել իր ամուսնոյն և տանը։ Արաքսիա տիկնոջ և իր աղախնոյն Կուսինայի այս հնարագիտութեամբը մեծապէս կ՚օգտուի նաեւ ծառայն Մանկասար, և կ՚ամուսնանայ աղախնոյն հետ։

5. *Փարթամ Ամիրայ*. — Մէկ հանդիսով

պաւէշտ մ'է, գրուած 1873ին ի Քաղկեդոն։ 20 թերթերէ կը բաղկանայ, և արձակ՝ բայց բանաստեղծական սիրուն Ձօնով մ'ընծայուած է 17 ամեայ կուսի մը, զոր քերթողն Օլաքրինա կ'անուանէ, ըսելով. «Դո՛ւ որ հազիւ թէ եօթն և տասն գարուն տեսած ես, ու արդէն աշխարհքիս ունայնութեան ճաշակն առած, բազմափորձ անձի մը պէս՝ մահդ կը փափաքիս, ու այն վարդերը՝ զորս շատո՛նք իրենց գլխոյն պսակ կը կազմեն, դո՛ւ անտարբեր ձեռքով մը թերթերը կը թափես, ու արհամարհոտ ոտքով մը կը ճմլես, օրիորդդ չքնաղ։ Ի՞նչ դժնդակ մրրիկ կոյս սիրտդ այդպէս ալեկոծելով, հոգւոյդ երկինքը սեւ ամպերով պատած է...»։ Հեղինակի նպատակն է այդ խաղով ներկայացնել Սամաթիոյ խոշոր՝ բայց ազատ կենաց և կենցաղի տարբերութիւնը, Բերայի նրբացած՝ բայց կաշկանդեալ կեանքէն, յանձին նորասէր Փարթամ Ամիրայի և իւր ընտանեաց, որ Սամաթիայէն Բերայ կը փոխադրուի։ Հիանալի կերպով յաջողած է քերթողը իր նկարագիրներուն մէջ, զոր տուած է հօրը, մօրը, դստերն ու Բոնիկ ապուշ ծառային, և իր չարաճճի աղախնոյն Ակիւլինեայ. որը — տիրոջ և տիկնոջ՝ իրենց նոր բարեկամներուն կոչունք

տուած, և հրաւիրեալներուն մի առ մի հրաժարած և տագնապալից շփոթութեան ժամանակ – կը յաջողի փախչիլ իր ծածուկ սիրահար վարսավիրային հետ, դրժելով Բռնիկին տուած խոստմանը, և ամօթով ձգելով իր տէրերը։ Ջաւէշտս իր համառօտութեանը մէջ բազմադրուագ է և հրահանգիչ։ Բարթող՝ Սամաթիացի հին բարեկամ մը միայն հաւատարիմ գտնուելով, կը պատուէ Սիրանուշի անուանադրութեան հանդէսը՝ նաև Բերայի մէջ. և առիթ կ'ըլլայ իր բարեկամներուն՝ վերադառնալու ի Սամաթիա, իրենց հին կենցաղին։ Մէկ խօսքով ամենայն իրօք զուարճալի է և հետաքրքրական իր տեսակին մէջ։

6. Ամրակուռ. – Երեք հանդիսով կատակերգութիւն մ'է, Բերայի կեանքէն. գրուած է 1866ին, զոր հեղինակը ձօնած է հակիրճ՝ բայց մեծ խանդավառութեամբ, չքնաղագեղ օրիորդին՝ Հեղինէի, որ իր սրտին և մաքին մէջ քաղցր և դառն յիշատակներ թողած էր։ Խաղս 36 թերթերէ բաղկացած է, և դիտմամբ ալ Պոլսի ռամկօրէնով գրուած։ Ցոյժ ճոխ և ճկուն է՝ իր հանճարեղ ասացուածներովը։ Ճարտար կերպով նկարագրած է՝ Մինասեան՝ Իզմիրէն Բերայ հաստատուող

և շրջող խարբերայ երիտասարդներու վարքն ու բարքը, որոնք անմեղ օրիորդները գլխէ կը հանէին, ահաւոր աղէտներով և բարուց զեղծումներով Պոլսի մթնոլորտը կ'ապականէին։ Ամբակում, որ բնիկ Տրապիզոնցի և հին սովորոյթներու յարեալ և բարեմոյն հայր մ'է, կը յաջողի վերջապէս Բիէռի և Բոլի ՝պատիր խաբէութեանց՝ դիմակը վար առնուլ, և փրկել իր Բրաբիոն և Շուշան դստերքը՝ մօտալուտ խայտառակութենէն։ Նոյնը՝ կու տայ նաև ազգու դաս մը՝ գաւառական կեանքը արհամարող ու զզուող Շուշան դստերն ու անոր համաբարոյ մօրը՝ Աղաւնիին։

7. Տօննա Լէօնօրայ[1]. — Թատերգութիւն՝ հինգ հանդէսով, սպանիական կեանքէն. զոր յօրինած է 1872 թուականին, և փոքրիկ՝ բայց սրտառուչ Ձօնով մը նուիրած է իր սիրելի մօրը՝ Իսկուհի տիկին Մինասեանի, (ծնեալ Հեքիմեան) յիշատակին։ Սա՝ որդւոյն բացակայութեանը ժամանակ վախճանած ըլլալով, անբուժելի վէրք մը թողած էր անոր սրտին մէջ։ Թատերախաղս, զոր հեղինակն իր գործերէն մետասաններորդը կ'անուանէ, և իր « անդրանիկներէն ընտրելագոյնը », 50

1. Այն է Դի Պերէզի Մարքիզուհին։

թերթերէ կը բաղկանայ. և իրօք ալ այդպիսի յայտարարութեան մ'արժանի է։ Հաւատաքննութեան ժամանակ և Տոլէտի քաղաքին մէջ կատարուած նշանաւոր դէպք մ'է. այսինքն է՝ Դօննա Լէօնօրա, սիրային վրէժխնդրութեան համար, յետ բանտարգելու իր պալատին մէջ Մաւրիտանացւոց յաղթող Ալկանթարայի կոմսը՝ Դօն Ռոտրիկ, և անոր սիրուհին Սառայ, ապա հաւատաքննութեան գահերէց Դօն Ալվարէզի կողմէն վճիռ եւս կը հանէ՝ զանոնք հրապարակաւ խարոյկի վրայ բարձրացնելու։ Սակայն Սառայ, երբեւ նոր ոմն Յուդիթ, իր գեղովը հրապուրուած Ալվարէզէն ազատութեան անցագիրը կորզելէն վերջ՝ Հողեփեռնէսի պէս սպաննելով զինքը, իր սեղանաւոր հօրը՝ Սամուէլի և Դօն Ռոտրիկի հետ բանտէն փախչելով կ'ազատուին։ Մարքիզուհին Դօննա Լէօնօրա — որ իր դժոխային վրէժխնդրութեանը համար Մեսալինայի կատարեալ պատկերն է, զինուորներով բանտը այցելած պահուն՝ անոնց փախուստը իմանալով, Լօրէնցօ լրտեսէն, և երբ իր հօրեղբայրն՝ Դօն Ալվարէզ եւս այն դաշոյնով սպանուած կը տեսնէ — զոր ինքը սպառնական նամակով մը՝ Սառայ օրիորդին յղած էր անձնասպան ըլլալու համար — այնու.

հետեւ կատաղութենէն և յուսահատութենէն նոյն դաշոյնը հանելով՝ կը մխէ իր սիրտը, և կը գոչէ յուսահատութեան հեգնական ծիծաղով մը. «Դժոխք, ընդունէ քու աղջիկդ». և կիյնայ մահացու։ Իսկ Դոն Գլաս՝ իր դրժած նշանածը, որ չյագենալով՝ Դոն Ռոտրիկի դաւաճանութեամբը, Լէօնօրայէն եւս վրէժը կ՚ուզէր լուծել, այդ ահաւոր վայրկենին կը գոչէ խելագար. «Նենգաւո՛ր կին, եթէ դու վրէժդ չհանեցիր, գոնէ իմս կիսով չափ յաջողեցաւ»։ Սպանիական բարուց և տաքարիւն բնաւորութեանց նկարագիրները յոյժ կենդանի են և ահացուցիչ. Վիկ. Հիւգոյի Notre-Dame de Parisն կը յիշեցնեն։ Մինասեան, եթէ ուրիշ թատերախաղեր գրած չըլլար, այս միայն բաւական էր անմահացընել իր գրիչը, չըսեմ նիւթը. բաւական է՝ թէ ուրիշէ ներշնչուած չըլլայ։

8. Զապէլ. — Ողբերգութիւն մը՝ հինգ արարուածով. երկրորդ դարու ազգային կեանքէն, ուստի և նիւթի կողմանէ բոլորովին դասական։ Երկասիրած է 1858ին, ընտիր աշխարհաբարով. և հեղինակի խաղերէն երկրորդն է՝ ըստ երիցութեան։ Միջնադարեան Զապէլ անունը, զոր յատկացուցած է քերթողը՝ Արտաշէս Բ.ի դստերը, հակաժամա-

նկագրական է իրաւի և պատմականօրէն անմեռելի ։ Ողբերգութիւնս 60 թերթերէ բաղկացած է, և յոյժ սրտաշարժ, սիրային և սոսկալի տեսարաններով։ Արտաշէս՝ երկիցս կ'ըլլայ որդեսպան։ Ունի դեռ ուրիշ նորութիւններ ևս, որոնցմով յոյժ կը տարբերի նոյն թագաւորին վրայ շինուած ուրիշ խաղերէն. և այս՝ Սեպուհ Մինասեանի բանաստեղծական յանդուգն խոյացումներուն է արգասիք։

9. *Տիկինն Սօֆրօնիայ.* — Երկու արարուածով կատակերգութիւն մ'է, քաղկեդոնաբնակ ֆրանսական կեանքէն, զոր գրած է 1867ին, և սիրազեղ Ջօնով մը նուիրած իր վաղամեռիկ քրոջը՝ օրիորդ Բուքոլի յիշատակին։ Կատակերգութիւնս, որ 35 թերթերէ կը բաղկանայ, ըստ ինքեան կրելու էր իր վրայ Հեկտոր և Սիլվիայ տիտղոսը՝ զի այս կոյս ամոլի սիրահարութեան և ամուսնութեան շուրջը կը դառնայ։ Բայց որովհետև Հեկտորի մայրը՝ տիկին Սօֆրօնիայ, բարոյականի մասին ունեցած խստապահանջութեամբն և անոր դէմ յաճախող ժամանակի զեղծումներուն իբրև երդուեալ թշնամի, մեծ և ընդարձակ դեր կատարելու կոչուած է. ահա այս պատճառաւ իսկ է,

որ իբրեւ դիւցազն ներկայացուած է խաղին։ Այս անաչառ կինը, որ Թենթամար և Մարթինեակ ընտանեաց Թակ կոչկոճիչ եղած էր, և խափանիչ Սիլվիայ օրիորդին՝ իր որդւոյն հետ ամուսնանալուն, վերջապէս պարտուած որդիական սէրէն և օրիորդի չքնաղ առաքինութեամբ կատարելիք մէկ գոհէն, յանկարծ կը շարժի — իբրեւ աներեւոյթ զօրութենէ մը — և կու տայ իր հաճութիւնն ու օրհնութիւնը անոնց՝ իրարու հետ ամուսնանալու, ի մեծ զարմանս ամենուն։ Հնարագիւտ հանգուցով մը կը լուծուի կատակերգութիւնը։ Յոյժ հոգեբանական է և բնորոշ վերջին տեսարանը, երբ Սիլվիայ արտասուօք կը ձգէ ինքզինքը ահաւոր տիկնոջ գիրկը, ուսկէ պահ մը յառաջ կը սոսկար. և մօր, որ մինչեւ վերջին վայրկեանը կ'ատէր զինքը՝ իբրեւ աւրող իր որդւոյն, յանկարծ ջերմ համբոյրներով «իմ սիրելի» աղջիկս գոչելը։

10. Արայն Գեղեցիկ. — Ողբերգութիւն՝ հինգ արարուածով, գրուած է 1861ին. կը բաղկանայ 40 թերթերէ։ Այս նիւթիս վրայ ուրիշներ եւս թատերախաղեր շիներ են, բայց հետեւելով, գրեթէ յամենայնի, պատմական աւանդութեանը։ Մինասեան այդ կլասիկական հիմը ընդարձակելով — իր բանաստեղծա-

կան խանդերովը — նորանոր և անակնկալ տեսարաններ եւս կը պարզէ ընթերցողին առջեւ՝ Արայի քաջագործութեանը, Նինուէի կրկէսին մէջ : Հայոց դիւցազին, ամուսնական հաւատարմութեանն ու հայրենասիրութեանը, Շամիրամին և իր տռփանաց նկարագիրքը գերաստիճան են : Այնպէս որ՝ ինչ որ Ռոսսինի կ'ազդէ իր Semiramide համերգովը, կարծես թէ նոյնը կը ներգործէ Մինասեան, անոր բերանը դրած մենախօսութիւններովը և Արայի հետ ունեցած խանդաղատ խօսակցութիւններովը : Դարձեալ՝ մեր բանաստեղծը, իբրեւ լոկ վաւաշոտ և ոխերիմ կին մը չէ, որ կը ներկայացնէ Նինուէի աշխարհակալ թագուհին. այլ մանաւանդ թէ նա է, որ Արայի յիշատակն յաւերժացնելու և իր ոճիրը քաւելու համար, կը պսակէ անոր որդին Կադմոս՝ իր հօրը պսակովը, և սուրը կը կապէ անոր Մուրէն զօրավարի մէջքը, Հայաստանը պաշտպանելու համար. և աճիւնը պարունակող ոսկեղէն սափորն եւս Նուարդին կը յանձնէ, իբր երաշխէպ երկու թշնամի ազգերուն մէջ հաստատուած բարեկամութեանը : Յոյժ հոգեբանական է, տռփոտ թագուհւոյն, երկիցս Ասուր զօրապետին հրաման տալը, որ Հայոց սահմանները կոխէ

զօրքով, և երկիցս Անտիոքոսի պէս հրամանը յետ առնելով պատերազմը դադրեցնելը, Արայի սիրոյն համար։ Իսկ սա, Նուարդին չդրժելու համար, պատերազմը կ'ընտրէ միշտ։

11. Արշակ Երկրորդ. — Ողբերգութիւն մը՝ հինգ արարուածով. հեղինակի թատերախաղերէն անդրանիկն է. այսինքն է՝ 1857ին գրուած. և կը բաղկանայ 44 թերթերէ։ Եթէ Փաւստոս Բուզանդացին իբրև պատմաբան, Սեպուհ Մինասեան ալ որպէս բանաստեղծ վիպասան՝ հիանալի կերպով դուրս ցատկեցուցեր է գոռոզ Արշակունու և իր բռնած քաղաքական ուղղութեան նկարագիրը։ Տըժգոհ նախարարաց դաւադրութիւնը, Ներսէս Կամսարեանի առաջնորդութեամբ, և Մեծին Ներսէսի ձեռքով՝ Թագաւորին անոնց հետ հաշտուիլն երդմամբ ու ստելը մէկ կողմէն, և միւս կողմէն ալ — հայ ուրացողներու թելադրութեամբ — պարսիկ զօրաց՝ ոստանը պաշարելն, այլովք հանդերձ, և Արշակայ տագնապը՝ հիանալի տեսարաններով դուրս ցատկեցուցեր է։ Կարծէք թէ Րաֆֆիի «Սամուէլն» է, զոր կը կարդանք, անկէց շատ տարիներ առաջ յօրինուած։ Վերջին արարուածը, որով փոխանակ Դրաստամատի՝ Սմբատ Բագրատունի տիրասէր սպարապետը

յանկարծ իրեններով մացնել կու տայ բանաստեղծը՝ Անյուշ բերդին մէջ, Թագաւորը ազատելու համար, մինչդեռ նա իր դաշյանով ինքզինքը մահաբեր կերպով վիրաւորած է արդէն և կը բանգագուշէ. Թէպէտեւ պատմական չէ, բայց յոյժ բանաստեղծական է։ Այսպէս նաեւ բանտին մէջ Արշակայ բերանը դրած մենախօսութիւնը, ուր կ՚երեւին իր ձեռքով սպաննուած նախարարներու և անոնց որդւոց ուրուականները, Օղիմպիայի, Մեծին Ներսիսի և Վաղարշակէն սկսեալ Արշակունի վեհապետաց ստուերներն, և կը խօսին։ Այսպէս և՛ անոր անհաշտելի վրէժխնդրութեան և անզեղջ մահուան նկարագիրը՝ շատ կենդանի են և ազդու։

12. *Յեփթայէին աղջիկը.* — Երեք արարուածով գեղեցկահիւս Ողբերգութիւն մ՚է, յօրինուած 1873 թուականին, զոր հեղինակն համառօտ ձօնով մը նուիրած է ուսումնատենչ օրիորդին Մարի Հ...ին, կոչելով զինքը մուսայ բարեկամ և ներշնչող իւր այդ երկասիրութեան, ըսելով. «Առանց քու թելադրութեանդ և ներշնչմանդ Յեփթայէ օրուանս լոյսը տեսած չպիտի ըլլար»։ Ողբերգութիւնս կը բաղկանայ 24 թերթերէ։

Երրորդ հանդէսը, թէ՛ մտածութեան ձեւի

նորութեամբ և թէ՛ թատրոնական արտայայ-
տութիւններով, ամենէն վսեմն է ու գեղեցիկը։
Դրական գրիչ մը, կաշկանդուած սուրբ Գրքի
պատմական նկարագրին մէջ, թերևս ալ
ուրիշ բան պիտի չկարենար ընել, բայց եթէ
ընդարձակել զայն և ազդեցիկ ընել, ինչպէս
ըրած է Եղիշէ՝ Դատաւորաց մեկնութեան մէջ։
Սակայն մեր թատերգակ քերթողն, իր բա-
նաստեղծական երևակայութեամբ և գիւ-
տովը, այնպիսի յանդուգն քայլ մ'ըրած է,
որ կարծես թէ պատմական եղելութիւնը
պիտի եղծանէ։ Եւ սակայն՝ ոչ միայն չեղ-
ծաներ, այլ և անակնկալ հանգուցով մը կը
լուծէ ամէն բան։ Եւ այդ հանգոյցը, այդ
չքնաղ տեսարանը յայսմ կը կայանայ. զի
Յեփթայէ հեռուէն տեսնելով իր միամօր
դուստրը՝ Ռեբեկայ, որ կուսանաց և իր նշա-
նածին Ազարիայի հետ դէպ ի առինքն կու
գայ, չուզեր զանի տեսնել։ Այլ ինքնիրմէ
ելած՝ աղաղակաւ խոյս կու տայ. և փակուած
սենեկի մը մէջ՝ կը սկսի բանդագուշել։ Այդ
առանձնոցին մէջ կը տեսնէ իր աղջկան շի-
րիմն ու ուրուականը՝ զոր իբր արդէն իր
սրովը զոհած կը կարծէ։ Կը պատմէ իր
ըրած անխորհուրդ ուխտը և անոր ահաւոր
հետևանքը. կը տանջուի ահագին տագնա-

պով և ջղաձգութեամբ։ Ռեբեկայ՝ որ Ագարիային հետ անկիւն մը քաշուած գաղտ՝ կը լսէ բոլոր եղելութիւնը, և կը տեսնէ հօր ներքին տագնապն ու տանջանքը, կ'ուզէ մէջ տեղ նետուիլ՝ հայրը հանգստացնելու համար. սակայն նշանածը կ'արգելու զինքը։ Բայց Յեփթայէ երբ սուրը մերկացնելով կ'ուզէ իր սիրտը խօթել, ալ չի դիմանար Ռեբեկայ. յանկարծ ներսը վազելով կը բռնէ հօր բազուկը, գոչելով. Հա՛յր իմ, հայր. ես ողջ եմ մեռած չեմ։ Սակայն հայրը չհաւատար. զանի ի բաց կը վարէ՝ շարունակելով իր մենախօսութիւնն ու բանդագուշանքը։ Ներս կը մտնեն վերջապէս իր ամուսինը՝ Սառայ՝ և Ագարիա, և դժուարաւ հազիւ զինքը կը համոզեն, որ Ռեբեկայ իր դուստրն է։ Յեփթայէ զգաստանալով՝ կ'ընդգրկէ իր աղջիկն ու փեսան. կը հրամայէ որ հարսանեաց պատրաստութիւնները շուտով տեսնուին։ Սակայն երբ հարցնելով կը տեղեկանայ իր աղջկանէն, թէ ինչպէս անձնասպան ըլլալու փորձն, այսպէս և Եհովային տուած երդումը և Ռեբեկան ողջագուրելն, այլովք հանդերձ; լոկ երազ կամ ցնորք չէին, այլ իրականութիւն. վերստին կը տանջուի, ըսելով. «Ապա ուրեմն, սա ներ-

քին ձայնն, որ 'ի սկզբանն է ի վեր՝ Երդուսմդ կատարէ՝ կը բողոքէ, զիս չը՞ խաբեր. ուրեմն կատարելու ուխտ մ'ունիմ »:

Ցեփթայէ անձկանօք խորհուրդ կը հարցնէ իր ամուսինէն և աղջկանէն, թէ կա՞յ արդեօք միջոց մը՝ ազատուելու իր երդման կատարումէն. սակայն երկուքն եւս, ըլլալով յոյժ աստուածավախ, անկարելի կը համարին ուխտազանց ըլլալը, և քաջութեամբ կը նուիրեն իրենք զիրենք: Ցոյժ սրտաշարժ է այս տեսարանը, ուր մանաւանդ Ռեբեկայ կուտայ վերջին հրաժեշտը իր մօրը և նշանածին, և հօրը հետ կը մեկնի դէպ ի ահաւոր զոհը. որով կ'իջնէ վարագոյրը, թողլով ընթերցողը ահագին տպաւորութեան ներքեւ: Մինասեան, իբր կլասիկի հետեւող, չէ ուզած որ թատերաբեմին վրայ գործադրուի այդ սոսկալի և ահեղ տեսարանը, որն անշուշտ Շէքսպիրի Դէսդեմոնայէն աւելի ազդեցիկ պիտի ըլլար:

13. Սելիմ Երրորդ. — Հինգ հանդիսով թատերերգութիւն մ'է, Թրքական քաղաքային կեանքէն, զոր գրած է 1866 թուականին, ու գեղեցիկ ուղերձով[1] մը նուիրած է իր

1. Կ'արտագրեմ այդ ուղերձը, որպէս Սեպուհի սրտին

ուրուհի օրիորդ Հոփսիմէին։ Թատերգութիւնս 40 թերթերէ կը բաղկանայ, և յոյժ քնքուշ ու կատարեալ է, իր մէն մի նկարագրին և ամբողջութեանը մէջ։ Հիանալի է իր բանաստեղծութեամբը բանտարկուած ինքնակալի բերանը դրուած մենախօսութիւնը. ծովի և լուսնի գիշերային չքնաղ տեսարանը մէկ կողմէն, իսկ միւս կողմէն ալ արքունական պալատէն հնչող բացական երաժշտութեանն ու նուագարանին երգը, որոնք կը յիշեցնեն Սէլիմի՝ իր երջանկութեան օրերն և ներկայ թշուառ կացութիւնը, կու տան անոր գեղեցկութեան ամէն շպարը։

և մտքին հզօր արձագանգ մը. «Դու, որ երկրս հինգ տարիներէ ի վեր, մտքիս և սրտիս թագուհին ես, օրիորդ գեղաշնորհ. թէպէտև ճակատագիրն վեր վար տապալեց իմ գարուն տարիքիս ակնկալութիւնքը, և խամրեց կեանքիս գեղաբողբոջ ծաղկըները. այլ դու՛ միշտ կը գահակալես մի միայն, նաև ըղձանդ աւերակաց մէջ։ Իսկ երբ գրիչը ձեռքս առնում, Դու՛, նաև կը վառես սիրտս եռանդեամբ. նոր զգացմունք ինձ կը թելադրես, տուն կու տաս ինձ, իբր թէ ըլլայիր իմ բարերար հոգիս։ Մի՛ կարծեր՝ թէ անցեալին յիշատակն սիրտս դառնութեամբ լենալով, անէծք շըրթանցս վրայ թափառին . . . Ո՛հ ոչ. աղօթք միշտ կը բղխեն սրտէս անոր, զոր երբեմն սրբազան սիրով սիրած եմ, և կը սիրեմ տակաւին, թէպէտև անյոյս։

Ընդունէ այս սրտիս այդ նուէրն՝ զոր կը ձօնէ քեզ»։

14. *Ապտիւլ Ազիզ.* – *Եղերերգութիւն մ'է, հինգ արարուածով, զոր յօրինած է Մինասեան 1876ին։ Բանաստեղծականէն աւելի՝ պատմական և քաղաքական նշանակութիւն ունի երկս։ Հեղինակը ճիշդ գոյներով ներկայացուցած է Ապ. Ազիզի վարչութիւնը, Միհդատ փաշայի բարեկարգական նոր ծրագիրն, որուն գործակից եղած է և Օտ. Էֆէնտի, ու սարքուած դաւադրութիւնը՝ բոլոր մանրամասնութիւններով։*

## ՉԱՓՈՎ ՑՕՐԻՆՈՒԱԾ ԵՒ ԻՆՔՆԱԳԻՐ ՔԵՐԹՈՒԱԾՆԵՐԸ

*Սեպուհ Մինասեան թողած է նոյնպէս բազմաթիւ քերթուածներ, որոնք կը կազմեն 21 տետրակներ՝ ազգային երկու սեպհ եւ վերաբերեալ անձնաւորութեանց և ժամանակակից նշանաւոր անցքերու վրայ։ Առաջին երկու տետրակները կը կրեն* « ԱՌԱՋԻՆ ԳՈՐԾՔ » *ընդհանուր խորագրութիւնը. իսկ միւսներն առհասարակ կոչած է* « ՔԵՐԹՈՂԱԿԱՆ ՆԵՐՇՆՉՄՈՒՆՔ »։ *Բայց այդ ընդհանուր խորագրէն զուրս՝ կան տետրակներ որ առանձին և յատուկ խորագիրներ եւս կը կրեն։ Թուական ունեցող քերթուածները*

յօրինուած են 1871-1874 թուականներուն. իսկ միւսները՝ հաւանօրէն գրուած ըլլալու են թէ՛ յառաջ և թէ շատ վերջը իսկ։ Քերթուածներուս մէկ մասը վիպական է, մաս մը դիւցազներգական, մաս մը նկարագրական, և մասամբ ալ սիրային և եղերերգական։ Կրօնական նիւթերու վրայ ալ կան մի քանի երգեր, որոնց մէջ սակայն բանաստեղծը թէեւ ուղիղ, բայց դժբաղդաբար արտայայտած չէ այն խանդը, ինչպէս ուրիշ հոգերգողներ. որով և մեզ աւելի փափաքելի պիտի ըլլային։

Վիպականներու մէջ նշանաւոր են Վարդան և Մեշվինազ, որոնց նուիրած է Ժ.Զ. տետրակը, 27 թերթերէ բաղկացած. և յօրինած է զայս 1878 թուականին։ Մեծ Զամլըճայի հնաւանդ երկու սիրազոհերու անուամբ, և անծանօթ ձեռքէ մը շինուած աւանդական տապանը ծանօթ ըլլալու է Պոլսեցիներուն։ Ահա այդ աւանդական յուշարձանին վրայ յօրինած է Մինասեան իր զգայնիկ քերթուածը՝ երեք Երգով։ Ցանգաւոր և աշխարհիկ լեզուով ոգած վիպասանութեանս դիւցազն է առիւծն Վարդան։ Պոլսարնակ հարուստ հայու մը զաւակ է սա, որ կը բարեկամանայ Վրաստանէն գող-

ցուած և Խպրայիմ փաշային վաճառուած. ու տաճկըցած վրացի մատաղ օրիորդի մը, այն է՝ Սելվինազի հետ, զոր փաշան մեծցընելով շքեղ պարտէզի մը մէջ՝ մտադիր էր իրեն հարսնացնել։ Ռուս Թրքական պատերազմէն փաշային Պօլիս դարձած և հարսանիքը պատրաստած գիշերն է — փոթորկալից և ամպրոպայոյզ գիշեր մը — որ Վարդան, նախապէս տուած խոստման համաձայն, ալեկոծեալ ծովուն հետ կռուելով՝ կենացը վտանգով կը յաջողի վերջապէս ներս մտնել իր ծովարնակ հուրիին բնակարանը, զանի ազատելու անձնազոհութեամբ, և իր քրիստոնէական հաւատքին վերադարձնելու համար։ Նաժիշտներէն մէկուն, այն է՝ Ռէհանի մատնութեամբը դուռը կը փակուի յանկարծ և դաւը կը յայտնուի։ Փաշան զինուած գերիներու ձեռքով կը պաշարէ պալատը։ Սիրոյ ամոլին ձերբակալուելու ժամն հնչած է արդէն։ Հաւատարիմ Նաւավարը դուրսը անհամբեր կը սպասէ իր դիւցազին յաջող դարձին ի ծովափն. բայց ի զուր, այս անգամ խուսափելն անկարելի է։ Վարդան առիւծի պէս պատերազմելով՝ մատնիչին հետ շատ մը գերիներ եւս կը դիակնացնէ. սակայն ինքն եւս մահացու վէրք մ'առած կ'ինկնայ։

Մինչ Վարդանի դիակը փաշային հրամանով ծով կը նետուի, Մէլքինեաց ուշաբերուելով ինքզինքն ալ նոյն պատուհասէն վար ծովը կը նետէ, իր ազատարար Վարդանին համար զոհելով. և կ'անհետանայ ալեաց խորը։ Անտեսնելի հրեղէն մը, որ քերթողի ճարտար գրչէն կ'արծարծի և կը բորբոքի, նոյնը մէկ ժամուայ մէջ մոխիր կը դարձնէ փաշային պալատը գերդաստանին հետ. և երկնից արդար վրէժխնդրութիւնը կը կանգնի հոն՝ իբրև յաղթութեան ահաւոր յուշարձան մը։

Ժը.րդ տետրակը՝ որ քերթուածներէն ընդարձակագոյնն է, այսինքն՝ 131 թերթերէ բաղկացած, և յօրինուած է յամին 1879 ի Թարապիա, կը ներկայացնէ մեզ չորս ընդարձակ երգերով փոքրիկ դիւցազներգութիւն մը։ Իսկ դիւցազնն է 18 տարեկան քաջ պատանին Գեղամ։ Քերթողի նախերգանքէն այնպէս կը տեսնուի, թէ սա պատմական անձնաւորութիւն մը չէր, այլ իւր ինքնաստեղծ մտքին ծնունդը. մանաւանդ թէ նոյն ինքն երգասէր քերթողը՝ իր երիտասարդական տիոց պատրանքի մէջ[1]։ Այո՛,

1. Այս ակներեւ կը տեսնուի իր հետեւեալ տողերէն իսկ.

ինչպէս Կէթէ յանձին Ֆաուստի, այնպէս և Սեպուհ Մինասեան՝ հաւանօրէն յանուն Գեղամի՝ ուզած է նկարագրել իր իսկ երիտասարդութիւնը, զինքը յուզող իղէալներուն ու արկածախնդրութեամբքը։

Քերթուածիս երևակայական դիւցազնը սակայն եթէ ոչ քերթողական հանճարով, այլ քաջութեամբ ու արկածախնդրութեամբը յար և նման է Ալպիոնի մեծ բանաստեղծին՝ Պայրընի։ Եւ այս նպատակաւ է՝ որ Մինասեանի քերթուածի դիւցազին արարուածները — թէև Պոլսի արուարձաններէն և Վոսպորի կապու-

« Վըսեմ հանճարն ունեցաւ թէ զիւր դատիչ,
Ի՞նչ արդիւնքով կրնայ պարծիլ բութ գըրիչ.
Դիւցազնութիւն այլ բազմաց է և անծանօթ,
Իմ շընորհիւս նախ սա չնչէ նաև զօդ.
Ես իմ ծընողն, յինէն զի ա՛ռ ըղծընունդ,
Ըղկըրթութիւն, զամէն տեսակ և սընունդ։
Գեղամ անուամբ մէկն է քաջ և գեղեցիկ,
Թէպէտ ըղգլուխն ոչ գեռ պճնեն սարդենիք . . .
Կան շատ տըղայք որ գըրգակով ծընանին,
Ի սոցանէ անշուշտ էր մեր պատանին.
Ճարտարախօս, շատ մը զինուց աճողակ,
Ի նըպատակ ուղղել գիտէր զիւր գնդակ.
Չէր սըրիկայ, ինչպէս են շատ պատանիք,
Թափառական շըջող բայց էր թիթեռնիկ »։

տին մէջ կը սկսին և կը զարգանան — բայց յարափոփոխ ընթացքով կ'երթան և կը կապուին Ցունաստանի ապստամբութեան դէպքին, այն է՝ Միսոլոնգիի քաջերու կոտորածին և Պայրընի դիւցազնական մահուան հետ։ Ժուրտան գաղղիացի ծովակալին և իր յոյն բարեկամ Լամպոյին հետ ծովային հէներու դէմ մղած պատերազմն ու քաջարութիւնքը, Եանինայի իշխող Թէփէտէլէ փաշայի ապըստամբութիւնն ու օսմանեան Սպարապետ Խուրշիտ Ահմէտ փաշայի յաղթութիւնն. այսպէս նաեւ յունական ազատութեան և վերածնութեան համար գործող քաջերու արարուածներուն Գեղամայ մասնակցութիւնը այդ փոկրիկ դիւցազներգութիւնը՝ ընդարձակագոյնի մը չափ գեղանկար և բազմադրուագ կը յօրինեն։ Այո՛, այս ամենայն այնպիսի վառ խանդով կը նկարագրէ մեր քերթողն, որ կարծէք թէ ինքն ականատես եղած ըլլար անոնց։ Այս ալ ըսենք, որ հելլէն դասական քերթողները իրենց հին փառքովն ի նպաստ նոր Ցունաստանի կոչած ժամանակ, չի մոռնար հայկական հին ու նոր գրողաց և լեզուի նկատմամբ եւս քննադատական խիստ տեսութիւններ ընել սոյն քերթուածիս մէջ։ Մէկ խօսքով՝ Գեղամ իբրեւ հայ ասպետ մը

զէնքը ձեռքէն կը մեռնի. բայց Նայաէ իր խանդաղատանքովը կը պսակէ անոր շիրիմը, ուր ապա կը գտնէ նաեւ իր յաւիտենական հանգիստը:

Ժէրօ պրակովը — զոր յօրինած է 1878ին — կու տայ մեզ համառօտ՝ բայց գունագեղ վիպագրութիւնը Լէֆրէր նշանաւոր աւազակապետին, որ Ոլիմպոսի անտառներուն և անձաւաց մէջ բունեալ՝ սարսափեցուցած էր Պուրսայի և շրջակայ գաւառներու ազգաբնակութիւնքը: Պատմականէն աւելի գեղեցիկ են և ազդու վիպագրի բանաստեղծական ստեղծագործութիւնքը: Վիպագրութիւնս երկու կայտառ երիտասարդներու տեսարանով մը կը բացուի, որոնք քոյր և եղբայր են, բայց իրարու անծանօթ կերպով կը խօսին և գործեն ի սկզբան՝ անտառի մը խորը. այսինքն են՝ Միրքայ և Լամպօ:

Ապա կը նկարագրուին աւազակապետի նախկին համեստ կեանքն ու դժնեայ պարագաները, որոնց պատճառաւ մղուած էր նա այդ անարգ արուեստին: Հարուստներու և հարստահարողաց այդ ահարկու դիւցազնը՝ կը ներկայանայ — Մինասեանի գրչի ներքեւ — միանգամայն որպէս մեծ բարերար մը աղքատներուն ու հարստահա-

բեալներուն։ Ու սոր համար է որ անտառաց շահապետը անխիղճ և աներկիւղ կը շարունակէ իր շահատակութիւնները, առանց մէկու մը արիւնը թափել ուզելու։ Իսկ օրիորդն Միրքայ ուրիշ բանի համար չէ՛ որ թշուառ մայրը լքանելով ի տան, առնացի տարազով կը շրջի անտառաց մէջ անոր ետևէն, և իբրև տիրող յաւերժահարսն մի կը հրամայէ աւազակախմբին և կը պաշտուի անկէց, բայց եթէ առիւծ Լէֆթէրը շահելու համար։ Իսկ Լամպօ որ կ'ատէ աւազակային կեանքը՝ և տխուր է միշտ և մտայոյզ, Լէֆթէրն անկէ յետ կեցնելու, և կամ քոյրը անոր ձեռքէն ազատելու համար միայն եկած յարած է աւազակապետին։ Ամէն օր նորանոր տեսարաններ և խնջոյքներ տեղի կ'ունենան անտառաց խորը։ Տխուր՝ բայց հիանալի գեղեցկութիւն մ'ունին քրոջ և եղբօր բերանը դրուած խորհրդաւոր երգերն, որոնք քերթուածին էն փայլկտուն գոհարները կրնան կոչուիլ։ Այդ կեանքը սակայն երկուքին համար եւս անդառնալի ճակատագիր մը դարձած կը նկարագրուի։ Տխուր և որոտալից գիշեր մը՝ որ կը յաջորդէ զուարթ խնջոյքի մը, Լէֆթէր Միրքային հետ կը քաշուի իր անձաւը. աւազակները

մորթենիները գլուխնուն վրայ քաշած կը քնանան ։ Իսկ Լամպօ , զոր տխուր մտածութիւնք արթուն կը պահեն , կը կանգնի մեղմով և ստուերի մը պէս կը դիմէ դէպ ի քարանձաւը ։ Կամաց մը ներս կը մտնէ՝ և իր սրովը կը կարէ ննջող առիւծի պարանոցը ։ Աղմուկէն արթնցած Միրզայ, երբ կը տեսնէ իր անգլուխ Լէֆթէրի իրանը, սոսկումով և մոլեգին Լամպօյի վրայ կը յարձակի

«Թշուառական, գնա՛ ալ», կանչէ, «իմ ձեռքէս
Հիմայ սատկէ՛, գնա՛ որ ըղպես քո ննջես» ։

Սակայն իսկոյն ճանչնալով իր եղբայրը, դողալով յետ յետ կ'երթայ, և կը հարցնէ. Դո՞ւ ես Լամպօ ... այդ ի՞նչ է ... — Եւ պատասխանը կ'ըլլայ.

«Եղբայրս մօր քում, գոչէ եղբայրն, ըղձքս դարձ» ։
իսկ պահակին ձըգեալ ըզգլուխն անկենդան,
«Ա՛ռ զայս յաւել, անձ վարձքդ ըստ իմ խոստման» ։
Մինչդեռ մըրրիկն գուայր, կայծակք շառաչեն,
Քոյր և եղբայր մէկտեղ տան խոյս անտառէն» ։

ԺԹ.րդ տետրակին մէջ նշանաւոր է Մարգար և Ցուշիկ խորագրուած ընդարձակ քերթուածը, յօրինուած 1879 թուականին ։

Սրտաշարժ և միանգամայն ասնկալի միպադրութիւն մ'է ազնուատոհմիկ ու մանկամարդ կնկան մը, որ իր չուզելովը հարսնացած ըլլալով Նորագիւղի 40ամեայ հարուստ սեղանաւորին՝ Մարգար Աղայի հետ, այն օրէն ի վեր թշուառ կը զգայ ինքզինքը, նոյն իսկ Վոսփորին վրայ նայող շքեղ պալատին մէջ, ու ներքին ցաւով մը կը մաշի անմխիթար։ Այդ զոյգին հարսանիքը, որ եռեքօրեայ հանդէսներով և խուռն բարեկամաց մաղթանքներովը երջանկութիւն կը խոստանար, սակայն քիչ ատենէն կ'ըլլար ամենէն թշուառը։ Չի ունայնասէր էրիկը ձանձրանալով իր տխուր և թշուառ ամուսնու կենակցութենէն, և ուզելով ազատիլ անկէ, կը խորհի գործել այն ազնիւ էակին վրայ ոճիրներու ամենէն անգութն ու ահաւորը։ Լուսին գիշեր մը՝ կը հրաւիրէ իր ամուսինը, որ իրեն հետ մակոյկով մը շրջագայելու ելլան Վոսփորի վրայ։ Խեղճ կինն ըլլալիք աղէտը գուշակելով՝ ի սկզբան կ'ընդդիմանայ Մարգարի առաջարկին. բայց յետոյ յաղթուելով անոր մերթ շողոմարար և մերթ սպառնացող խօսքերէն, կը զիջանի։ Կը մտնեն մակոյկը. և Մարգար հապճեպով կը թիավարէ։ Սեւ ծովը թեւակոխած պա-

հում՝ յանկարծ հրելով իր կողակիցը՝ կա-
տաղի ալեաց ձեռքը կը մատնէ. և երբ նա
կոհակաց վրայ երեւնալով՝ աղաչական բա-
զուկները դէպ ի առ ինքն կը կարկառէ,
թեւճակի մահաբեր հարուած մը անոր գըլ-
խոյն իջնելով՝ իսկոյն զինքը կ'անհետացնէ։
Կաշառով կ'ազատի ոճրագործ էրիկը մարդ-
կային ատենէն, և քիչ օրէն ալ առանց
ամչնալու վերստին կ'ամուսնանայ։ Սակայն
աստուածային արդարութիւնը նման աղէտ
մ'ալ իրեն պատրաստած էր. զի — տխուր
դէպքին տարեդարձին օրը — մինչ շքեղ նաւակ
մի հեծած կը հրամայէր նաւավարներուն
դէպ ի Նորգիւղ, յանկարծ նաւաձիգ շոգե-
նաւ մը վրայ հասնելով՝ իրեն տակը կ'առ-
նոյր զՄարգար։ Եւ ալիքներուն մէջ ջախ-
ջախուելով անոր գանկը, անդիէն անկերպա-
րան դիակ մը դուրս կու գար՝ ի տես աշ-
խարհի. պաղպաջուն ծովն ալ անոր արիւ-
նովը կը ներկուէր։ Ահա այսպիսի հարսա-
նիք մը և անոր եղերերգութիւնն է, զոր կեն-
դանի գոյներով նկարագրած է մեր քերթո-
ղը, և սոսկումով կը լեցնէ ընթերցողը։
Բայց թէ իրակա՞ն է արդեօք, թէ սոսկ ի-
դէալ մը բանաստեղծին, մեզ յայտնի չէ։
Ահմէտ և Հեշէն տիտղոսի ներքեւ կը ներ-

կայացնէ մեզ — Խ.Մ.Դ. տեսրակով — գեղեցիկ վիպագրութիւն՝ մը, Յունաց ազատութեան պատերազմէն առնուած, զոր յօրինած է 1880ին։ Սոթիրիս՝ յոյն հռչականուն ծովու հէն մ'է, որ մեծ կոտորածներ կու տայ օսմանցիներուն և մեծագոյն ծառայութիւն կը մատուցանէ իր սիրական հայրենիքին։ Սա գերի բռնելով իր ոխերիմ թշնամու՝ Մուստաֆա փաշայի որդին Ահմէտը, բանտած կը պահէ Քիոսի ամրոցին մէջ։ Սակայն Գեղոպոնեսացւոց վերջին ճգնաժամին ուզելով օգնութեան հասնել անոնց, բանտին բանալին և պահպանութիւնը իր հաւատարիմ աղջըկան Հելէնէի կը յանձնէ անխորհրդաբար, և առանց իմացնելու անոր թէ ով է Ահմէտը։ Հելէնէ որ կը կարծէր վայրագ աւազակ մը տեսնել հոն, այցելած պահուն՝ կը գտնէ իր դիմացը ազնիւ երիտասարդ մը, որուն վրայ մեծապէս կը կարեկցի։ Կ'արձըկէ իր հօր երկիւղալի գերին, որպէս զի փախչելով գտնէ իր ազատութիւնը։ Սակայն գերուած՝ տիրող տիպարի խօսքերէն, ինքն ևս անոր հետ կը դիմէ մինչև ծովափը. ուր կը լուէին սաստիկ հրանօթից որոտն ու աղաղակը։ Հոս կը վառի Ահմէտի պատերազմական ոգին — բանաստեղծին տուած խանդո-

վը — աչքերը հուր և շանթեր կը ցայտեցնեն։ Նա կը մոռնայ հայրենեաց սիրոյն համար այն ամենայն, որ զինքը պահ մը յառաջ հօն կը բեւեռէր. կ'ուզէ լքանել Հելէնէն ու Թռչիլ հօն՝ ուր շեփորը կը կոչէ։ Այս պահուս կը հասնի Սօթիրիս — յաղթականէն հալածուած — իր կղզին, աղջիկն ազատելու տագնապով մը։ Բայց կը լսէ՝ որ Ահմէտին հետ փախած է նա, դրժելով հօրը։ Առիւծի գոչիւնով կ'ընթանայ դէպ ի ծովափը, որպէս զի ինքը գէթ չմեռած՝ զանոնք սպաննէ։ Սրտաշարժ են այս տեղ բանաստեղծէն գըծուած հոգեբանական նկարագիրքը, մանաւանդ մահուան դուռը հասած գոյգին՝ առ Սօթիրիս ուղղած պաղատախառն խօսակցութիւնքը, և իրարու կեանքը ազատելու համար՝ զիրար զոհելու անձնուիրութիւնքը։ Օսմանցիք Մուստաֆա փաշայի առաջնորդութեամբ ամրոցին սկսած են տիրել։ Սօթիրիս հայրենասիրութեան պատուէն ու վրէժխնդրութենէն մղուած՝ երբ կ'ուզղէ հրացանը՝ զանոնք դիակնացնելու, յանկարծ յոյն բերդապահը պայթուցիկ նիւթերով ամրոցն օդը կը հանէ։ Ահա այսպիսի գեղեցիկ հանգուցով մը անոր աւերակաց տակը Թաղել կուտայ քերթողն զամէնքը. այսինքն է յաղ-

թողքն ու յաղթուողները։ Մեծ է տպաւո-րութիւնը։

Սիրերգներէն ու եղերգներէն կը յիշենք միայն Եօրն Օգոստոսի խորագրած քեր-թուածը, զոր յօրինած է իր կենաց յիս-նամեկին մէջ. և Հռիփսիմէ Պասմաճեա-նին վրայ յօրինած չորսէն հինգ երգերը, ո-րոնց երեքը մանաւանդ թէ՛ մտածութեան ձեւով և թէ զգացման յորդութեամբը Դու-րեանինէն վար չեն մնար։ Առաջինը ողբերգ մ'է — իր վրայ — ան որ կը հրաւիրէ նաեւ իր ազգին աշուղները՝ հնչեցնելու իրեն զրկուած սիրոյ տխրաձայն քնարը։ Բ.ն արտաքին ձեւովը հարսներգ մ'է՝ առ Հռիփսիմէ, իբրեւ նշան խնդակցութեան. սակայն ներքսապէս իր բնկեալ կեանքի դառն երգիծանքները կը թափէ — նետից տարափի պէս — անոր հա-կառակորդներու գլխոյն։ Իսկ Գ.ն եղերգ մ'է Հռիփսիմէի տարաժամ մահուան վրայ, ո-րով կ'անիծէ նաեւ անոր թշուառութեան շարժառիթները, հանդերձ մեղադրութեամբ այն տարաբաղդ էակին, որ չգիտցաւ ինք-զինքը բաղդաւոր ընել։

Քնարերգակ քերթուածներէն յիշատակու-թեան արժանի են յատկապէս Մայր և Աղ-ջիկ խորագրուած երեք օրօրները, որ իրենց

տեսակին մէջ նոր են, գեղեցիկ և ինքնատիպ։ Վէրք առաքինին կամ ապականութիւն բարուց վիպական ընդարձակ քերթուածը, որով քաջ նկարագրած է յանձին բարեմոյն բժշկին Հ... և անոր անհաւատարիմ ամուսնոյն Մ... ընտանեկան աղէտներն ու վըշտերը, ժամանակակից վարք ու բարքը կը պատկերէն։ Յոյժ հրահանգիչ է նաև Հայ դերասանուհին խորագրուածը, ուր կը նկարագրուին — աշխարհափորձ բարոյախօսի մը հմտութեամբ — մէկ կողմէն բարոյականի դէմ գործուած ժամանակակից զեղծումները, և միւս կողմէն ալ աղքատ՝ բայց պարկեշտ աղջըկան մը ադամանդեայ հաստատամտութեան հանդէսքը։

Նկարագրական ու գրուատական քերթուածներէն ալ յիշենք Տիկին Սրբուհի Քրէբէն Կէօշեանի, Գրիգոր էֆ. Կէօշեանի, Էրամեան իսկուհի տիկնոջ (Մ. Բիշմիշի), Հրաչէ տիկնոջ, Վարդան Պէյի՝ իբրև ուսուցչի և ազգային գործիչի վրայ յօրինուած քերթուածները։

## ՍԵՊՈՒՀ ՄԻՆԱՍԵԱՆԻ

### ՈՐՊԷՍ ՀԱՅ ԳՐԱԳԷՏԻ

### ԵՒ ԻՐ ԳՐՈՒԱԾՆԵՐՈՒՆ ԱՐԺԱՆԻՔԸ

*Հեղինակութեան մը արժանիքը գնահա-
տելու առաջին պայմաններն են՝ նախ դի-
տել այն դէպքերն ու անձնաւորութիւննե-
րը, զորս նա իր գրուածոց համար իբր կա-
րեւոր նիւթ ընտրած է. երկրորդ՝ այն կերպը
կամ եղանակը, որով նա այդ նիւթերը
մարմնացուցած ու ոգեւորած է։ Այս պայ-
մանները, իրաւ է, որ սերտիւ կապուած են
նաեւ գրուածոց նիւթերուն հետ, բայց վեր-
ջինս ամփոփ առմամբ՝ յատուկ է գրչին.
դիտելով մանաւանդ՝ որ ըստ հռչակաւոր
բնախօսին* Le style est l'homme même.
*Արդ՝ ԺԹ դարում՝ Պոլսի կամ լաւ եւս
տաճկահայ նոր. գրականութեան մէջ աւելի
կամ նուազ փայլ ունեցող քերթողներէն
շատերն՝ ընդհանրապէս կամ բնութեան տե-
սարաններով զբաղեցուցած են իրենց մտքին
ու սրտի խանդերը, և կամ զուտ վերացա-
կան երեւակայութիւնները միայն երգած և
մոռցուած են։ Քիչեր կարելի է գտնել, ո-*

րոնք անդէն ի սկզբան իրենց նիւթ ընտրած ըլլան իրական ու հասարակական կեանքը, թող թէ զանիկայ երջանիկ կամ թշուառ գործող պատահարներն ու պատճառքը։ Եւ Յեպուհ Մինասեան ահա այդ քիչերէն մէկն է։ Կարծէք թէ նա արեւելքի մէջ ապրող եւրոպացի մ'է։

Առաջին կէտն ակներեւ տեսնուեցաւ առդէն անոր ստանաւոր և արձակ գրուածներու յիշատակութեննէն և պարունակութեննէն իսկ, որոնք՝ դոյզն ինչ բացառութիւններով՝ բոլորն եւս կեանքի և մարդկային կենցաղի զանազան խաւերը կը շօշափեն, իրենց ընտանեկան, բարոյական, քաղաքային, ուրախ ու տխուր երեւոյթներով։ Իսկ երկրորդ տեսակէտով դիտել կու տանք նախ, որ նա — թէ՛ իր արձակ և թէ՛ ստանաւոր գրութեանց մէջ — ճարտար է՝ մեծ դիւրութեամբ, բնականութեամբ և ուժգնութեամբ պատկերելու և խօսեցնելու ոչ միայն նախընտրած նիւթերը, այլ նաեւ անոնց բոլոր ներքին և արտաքին միջավայրերը։ Աս ալ ըսենք որ՝ Մինասեանի նկարչական գեղեցկագիտութիւնն իսկ՝ մեծապէս նպաստած է բանաստեղծականին և վիպականին։ Առանձնայատկութիւն մը, զոր ազգային ուրիշ քերթողները կամ ունեցած չեն, և կամ անոնցմէ քիչեր ունեցած։

Սակայն էական բան մը, որ ընթերցողի վստահութեան հետ համակրանքին եւս արժանի կ'ընէ հեղինակութիւն մի, է՛ անոր անկեղծութիւնը։ Ես չեմ յիշեր ազգային նոր բանաստեղծներէն կամ վիպագրողներէն մէկը, որ ըլլայ Մինասեանի չափ անկեղծ։ Հին աշուղներէն ալ՝ Սայաթ-Նովայ և Քուչակ ունեցած են, այո՛, քաջութիւնը՝ խոստովանելու և ողբալու իրենց մարդկօրէն տկարութեամբ գործած պատրանքն ու զառանցանքները. սակայն մեր Պոլսեցի բանաստեղծին ու վիպագրողի անկեղծութիւնը ասանցինէն ալ գերազանց է։ Սա իր վէպերու մէջ — և նոյն իսկ անոնց՝ որոնք ուղղակի իր անձին և պատուոյն հետ կապուած են — վերջին աստիճան խղճմտանքաւոր և հաւատարիմ մնալ ուզած է միշտ անցեալին ու անակնառու։ Սա ոչ միայն մանրամասն պարագաներով կը պատմէ իր կենաց մէջ ունեցած երբեմնի անսանձ և անզեակ վայրկեանները, այլ և մեծ զզուանքով մը կը պարսաւէ և կը դատապարտէ զինքը շլացնող այդ վայրկեանները, որպէս տմարդի և բարբարոսական բաներ։

Այս ամենայն նկարագրած է նա — գողցես անկեղծ զղջացողի մը լեզուով ու հա-

*մօղմամբ — իր ՎՍԵՄ ԱՆՁՆԱՁՈՀ ՄԸ խորա-գրուած փոքրիկ վէպին մէջ, որուն նիւթը կան-խաւ ծանօթացուցինք արդէն։ Ներուի ինծի լսեցընել անոր բարբառը, որը գայթակղեց-նելէ աւելի՝ հրահանգիչ ըլլալու է, ըստ ինքեան, այլոց համար։ « Ցիրուի անագո-րոյն էր վարմունքս, անարդարանալի որ և իցէ դատաստանի մը առջեւ։ Կենցաղավա-րութեան գաղափարն անգամ չունեցող վայ-րենիին՝ հազիւ թէ ինծի պէս կը վարուէր։ Բայց աւելի զառնագոյն այն էր, որ այս տունն որ իմ արքայութիւնս պիտի ըլլայ կ՚ըսէի, իսպառ փակուած էր այնուհետեւ ինծի դէմ, և յանցանօքս զրկուած էի այն-պիսի կնոջ մը բարեկամութենէն, որ իմ զուարթունս պիտի ըլլար »...*

*Նոյն անկեղծութիւնը կը ցայտէ — ամօ-թի, կորանաց ու կարեկցութեան բոլոր զե-ղումովը — նաեւ ուրիշ մխպագրութեանց ու քերթուածոց մէջ։ Մարդկային կեանքի անիւը շարժող սիրոյ ազդակէն յառաջ եկած այս-պիսի տխուր վայրկեաններ, որոնք ոչ միայն ազգային, այլ նոյն իսկ Տանդէի, Թասսոյի, Պետրարքայի և ուրիշ մեծագոյն քերթողաց եւս հասարակ եղած են, Մինասեանի ազ-նիւ սրտի անչափ կատարելութեանց հանդէպ*

կը թուին ստուերի պէս չքանալ։ Եւ այդ անկեղծութեան վրայ ունեցած լիուլի վստահութեամբ է, որ ինչպէս Զարուհի «Վսեմ անձնազոհի» դիւցազնուհին, այսպէս և Մարի — խօսրով վէպի թշուառն և ուրիշ շատերը, վերջ ի վերջոյ ճանչնալով մեր քերթողի սրտի ազնուութիւնը, սրտառուչ նամակներով դարձեալ իրեն կ՚ապաւինէին։ Եւ սա կ՚ըլլար — յետին թշուառութեան մէջ — յաճախ անոնց խնամածուն ու մխիթարիչը. և իր անձնուիրութեամբը կը պահպանէր անոնց ընտանեկան սրբութեան օջախը, ու կ՚առաջնորդէր մինչեւ անգամ ի գերեզման։

Գրագիտիս նշանակութիւնը՝ քնարերգական քերթուածներէն աւելի՝ կ՚արտափայլի իր վէպիկներու և թատերգութեանց մէջ. ուր — իբրեւ փոքրիկ շրջանակներում — իրենց ճիշտ տարազներովը և դիմագծերով կը ներկայացուին թէ՛ վիպագիրն և թէ՛ վէպերու դիւցազնները։ Ինչպէս ամէն վիպագրի, այսպէս և՛ Մինասեանի համար, սէրը՝ երբ մաքուր է, մարդկային կենաց վայելքի բաժակը կը կազմէ. մանաւանդ երբ յստակ աղբերէ կը բղխի, կ՚ընթանայ և կը դիմէ դէպ ի բարին և համեստ նպատակը։ Սակայն թոյն է այն, և յոյժ գարշելի՝ խաբեբայ և խառնագնաց

անձանց ձեռքը։ Ուստի որչափ կարեկցող է և ջատագով առաջին տեսակէտով, նոյնչափ եւս կ'առէ, կը հարուածէ և կը ջախջախէ վերջինները։ Ըստ այսմ՝ ինքը թէպէտեւ իր դիւցազներու սիրային յարաբերութեանց մէջ լայնախոհ է և ազատական, բայց կրնայ ըսուիլ, որ բոլոր իր գրուածոց մէջ բարձր ջանացած է բռնել նաեւ քրիստոնէական կրօնքի և բարոյականի սկզբունքը. մանաւանդ թէ յարմար առիթին՝ նպատակայարմար դասեր եւս կու տայ անոնց դրժողներուն, լաւ քարոզչի մը չափ ազդու և արդիւնական։ Այս օգտակար և շինող դերը կը կատարէ նա՝ այնպիսի հաստատուն և անկեղծ համոզումով, որ կեղծաւորութեան ստուերն անգամ ի բաց կը վտարուի իր գրչէն։

Գործի և սկզբան միջեւ երեւցող այս հակապատկերին նայելով՝ ինձ այնպէս կարծել կու տայ վիպագիրը, թէ նոյն իսկ այլոց բարոյականի օգտակար դասեր տալու համար՝ ինչ ինչ վէպերու մէջ ուրիշին յատուկ եղող և կամ պարզապէս վերացական դէպքերը իր վրայ դարձուցած ըլլայ։ Եւ ասոր օրինակ կարելի է համարել բաց ի «Գեղամ»էն, նոյնպէս Իհ լիյճէ դիհ վէ-

պիկը, որուն նիւթին համար կ'ըսէ, թէ Համտի Պէյ իրեն պատմած ըլլար. հետեւաբար՝ առոր, և ոչ թէ իրեն յատուկ։

Մինասեանի վիպականքը չունին արդարեւ հսկայագործ վիպասանութեանց պահանջած լուրջ ու մանրամասն ուսումնասիրութիւնքը՝ սովորութեանց, պատմութեան և տեղագրութեան. սակայն ունին ուրիշ հրապոյրներ, որով ընթերցումը ձանձրանալի չլինելէն զատ՝ ճիշտ նկարագիրներ ևս կու տան ընթերցողաց։ Կեանքի փորձառութիւնն, արուեստ, եռանդ և զգայնութիւն՝ որոնք իր մէջէն կ'աղբիւրանան, նոյները միանգամայն խոր ու տպաւորիչ դրոշմ մը կը թողուն նաեւ մանրավէպերու հոգեբանական այդ նկարագիրներուն վրայ։ Ատանց երկայնաբանութեան և արուեստակութեան է։ Ուղղակի և բնականաբար կ'անցնի սէրէն ատելութեան, և ատելութենէն սիրոյ գերաստիճանին կը բարձրանայ, խանդի թեւեր առած. այնպէս որ մարդս պահ մը կը կարծէ, թէ յեղեղուկ է այդ փոխանցումը և հակասական։ Սակայն այն նոր դէպքերն ու պարագաները, որոնք վրայ գալով անակնկալ կերպով կ'ազդեն իր կամ իր հնարած անձնաւորութեանց հոգւոյն վրայ, լիուլի իրաւունք կու տան

վիպագրին։ Ընթերցողն ալ կը համոզուի, թէ խոր հիման վրայ ձգուած է այդպիսի փոխանցութեան կամուրջը։ Թողունք որ քիչ մ'ալ օրինակները խօսին։

Անտարակոյս ինչպէս գարնան նորեկ թըռչունն՝ այնպէս ալ լեզուն նոր բացուած երկնքամերձ տղայ մը սիրոյ միայն և արգահատանաց է կարօտ։ Սակայն մեր վիպագիրը անգութ տեսլութեամբ մը կը նայի և կը խօսի Ալֆրէտին վրայ, — «Վսեմ անձնազոհ մը» վիպագրութեան մէջ — երբ այդ անհանդարտ տղան քաշելով իր վշտակիր մօրը ծամերը և աքացելով և ոտքալով անդադար կը նեղէ զինքը։ Եւ այդ տեսլութիւնը իր գեր աստիճանին կը հասնի վիպագրողին մէջ, երբ կը նկատէ այդ երեխային վրայ՝ իր ժառանգած հօր պատկերը՝ բոլոր իր գազանային դիմագծութեամբքը. և կ'ուզէ բռնել զայն և ծովը նետել կամ խեղդել։ Սակայն երբ այդ չարաճճին իր անհանդարտութեան պատճառաւ ծովը կ'իյնայ, և Մինասեան իր կենաց վտանգով կը փրկէ զինքը, ու իր գրկին և մուշտակներուն մէջ սեղմած ժամերով՝ Եղիսէի պէս անոր շունչ ու կեանք կու տայ. մանաւանդ թէ այնու անոր մօր երախտագիտութիւնն ու բարեկա-

մութիւնն եւս կը վաստկի, ահա այդ վայրկե-նէն կը սկսի տաեւլութիւնը գութի փոխուիլ: Այնուհետեւ կը սիրէ նա այդ տղան՝ որպէս անոր վշտաց մխիթարն ու իր ազատեալը: Այդ ուշիմ մանկան մէջ մի հանճարեղ խօսքը, տղայական շարժմունքն ու թո-թովանքը հետզհետէ զինքը կը գրաւէ ման-կիկ Սէրի հմայքով: Եւ որ զարմանալի է՝ կը շարունակէ սիրել այդ տղան նոյն իսկ անոր պարկեշտասէր մօրմէն յանդիմանուած և զինքը լքած միջոցին: Կը սիրէ քանիցս կը հանդիպի անոր և կը լսէ թոթովանքը. «Մայրի՛կ, մայրիկ, ահա իմ ազատիչս»; և աչքերը արտասունքով կը լեցուին: Այդ սէրը երթալով կ'աճի և անձնուիրութեան կը հասնի, երբ անոր պանդուխտ հայրը երեսի վրայ ձգած իր զաւակն ու կինը՝ յանկարծ կ'անհետանայ. Ինքը կ'ըլլայ անոնց վերջին բարեկամն ու յանձանձիչը. ինքն է՝ մէկ խօս-քով՝ զանոնք հաշող ու մաշող հիւանդու-թեանց ժամանակ անոնց անբաժան ընկերն ու մխիթարիչը, մինչեւ ցմահ. և մահուանէն վերջ ալ յիշատակն յաւերժացնողը: Պէտք է կարդալ «Վսեմ անձնազոհը» վիպագրի հոգեբանութեան նշանակութիւնը հասկնալու համար. որը այնքան խիտ և զգալի է, որ-չափ փոքր է անոր քանակը:

Նոյն բնորոշ հոգեբանութիւնը կը գտնենք Մինասեանի բոլոր միւս վէպերու և թատրերգութեանց մէջ ևս ։ « Ալկիոն »ի Ունգարացի Թշուառը՝ Օքտաւ, որ մանկութեան զուարթ օրերում աշակերտակից եղած էր Հեղինակիս ու մտերիմը — Պոլսի Յիսուսեան վարժարանին մէջ — երիտասարդութեան յանգուգն հասակին մէջ ընդհակառակն կարեկցութեան միայն առարկայ դարձած կը տեսնէք՝ իր տխուր սիրավէպովը ։ Մինասեանի դիւցազնը՝ Կէթէի Վէրթէրէն նուազ տխուր և թշուառ չէ իր յուսահատ և ոգեսպան մըշտակրութիւններովը ։ Զնայելով որ Օքտաւի թշուառութեան պատճառն ընդհակառակն իրեն զրժող ու ամարդի մէկն է, սակայն և այնպէս կը շարունակէ սիրել զայն ։ Անոր ստուերին ետևէն կը թափառի, կ'որոնէ զայն փափոխակի՝ ահաւոր փոթորիկներու, ծովու ալեկոծութեանց, որսորդութեանց, առանձնութեանց և բաղդախնդիրներու յատուկ բիւրաւոր վտանգներուն մէջ ։ Կը սիրէ, վասն զի հոգեբանական գաղտնիք մը կը մղէ զինքը ։ Եւ այդ գաղտնիքը իր իսկ մէջը բունած է, քան ուխտադրուժին ։ Բայց ի զուր․ նա չկարենալով հասնիլ իր սիրած էակին, որուն կենդանագիրը երթալով կը մեծնայ իր

հոգւոյն վրայ և կը ճնշէ մինչեւ ցյուսահատութիւն։ Վերջապէս իր կեանքն եւս կը զոհէ — ստացուածներէն պատուականագոյնը — մատնելով օր մ'ինք զինքը Մարմարայի վիշապաձեւ ալիքներուն։ Եւ այս կը հանդիպի ճիշտ այն օրը՝ երբ իր հինաւուրց բարեկամին և վիպագրողի հետ որսի ելած էր ի Բաշալիման։

Մինասեան՝ ինչպէս իր դիւցազնի այդ տարօրինակ սիրոյ շարժառիթը գտած է անոր տխուր հոգեբանութեանը, այսպէս ալ անոր անձնասպանութիւնը կը բնորոշէ դրժող էակէն ընդունած վաղեմի նամակի մը վերստին ընթերցման և Օքտաւի ջղային ու մաղձոտ բնաւորութեանը մէջ։ Ճշգրի՛տ հակապատկերք՝ նման և աննման զգացումներու. բայց միանգամայն ո՛րքան խորհրդաւոր և անլուծանելի գաղտնիք։

«Մարի—Խօսրով» եղերերգութիւնը թէպէտեւ ըստ նիւթին նման է առաջինին, վասն զի հոս եւս օրիորդ մ'է, որ անգէտ իր ապագային՝ կը դրժէ թեթեւութեամբ ազնուաբարոյ Խօսրովին, զոր կ'ուզեն փեսայացնել։ Սակայն հոգեբանական նկարագիրքը յոյժ տարբեր և նրբին լուսաստուերներ առած են յանձին վեհանձն սիրողին ու ապերախտ դրժողին։ Երկրորդ հանդիսին մէջ՝ այն տե-

սարանը, ուր Խոսրով մենամարտութեան մէջ առած վէրքէն դեռ բոլորովին չապաքինած՝ կ'ուխտէ երթալու ի Հռոմ և փակելու ինքզինքը բոկոտն Կարմեղեանց վանքը, արդէն իսկ շատ բաներ կը խօսի մեզ, և շատ խորհուրդներ կը պարունակէ գրկուած երիտասարդի կեանքէն։ Իսկ կարմիր ժապաւէնով կապուած ծրարը (այսինքն Մարիէն երբեմն առինքն գրած անկեղծ նամակները), զոր յոգոց հանելով կը յանձնէ իր բարեկամին՝ Մէլիք բժշկին, — որպէս զի սիրապրուած կնոջը դարձընէ — ներելով իրեն անցածը. իր երբեմնի հաւատարիմ սիրոյ նշանակ՝ գոհարազարդ մատանին, զոր տուած էր Մարիին, վերստին յետ առնըլուն, ու կտակելուն՝ որ յիշատակ տրուի այն նոյն եօթնեկին մէջ կարգուող որբ և աղքատ աղջըկան, մը աւելի և աւելի խորհրդազգած կ'ընեն այդ կեանքը։ Այսպէս նաեւ մօրը, բարեկամին և Պօլսին տուած անոր վերջին հրաժարանականքը՝ ազնիւ հոգւոյ վսեմ արտայայտութիւնք են։ Իսկ չորրորդ հանդիսին մէջ մեր թատրերգակ քերթողը կը բանայ վատ հոգւոյ դժոխքը. այսինքն է՝ Մարիի անառակ ամուսին կռոնակի ձեռքով։ Սակայն Մինասեան տեղեակ է նաեւ հասարակութեան կեանքի հոգե-

բանութեանը . և զանի չվիրաւորելու համար է՝ որ շուտով ներս կը մտցնէ Թշուառ զոհին հայրը Ոսկինար, որ — Ղոլտայ հրեշտակին պէս — ազատելով անօգնական կինը , զաւկին և աղախնոյն հետ իր տունը կը պատսպարէ ։ Եւ հոգեկան յեղափոխութիւններէն ամենէն զգալին , ու թատրոնական տեսարաններէն է՛ն սրտաշարժը այս տեղ է — այսինքն՝ Ե. Հանգիսին մէջ — ուր կը բանայ դիմացնիս ։ Մարի ընկճուած ընտանեկան այդ ահաւոր աղէտէն՝ թառամեալ վարդի մը պէս կ՚ինկնայ ցաւոց և տրտմութեան մահճին մէջ. բարակ ցաւը՝ խղճի որդին հետ օր քան զօր կ՚ուտեն ու կը մաշեն զինքը ։ Ո՛չ Մէլիք բժիշկն և ոչ դեղեր կրնան կասեցնել անոր մահը ։ Գթոտ և ունայնասէր կինը՝ որ ի վաղուց սկսած էր զգալ իր թշուառութիւնը՝ բայց կը կ՚եղծէր զայն Մէլիքին , այժմ կը զգայ բոլոր անոր ծանրութիւնը իր խղճին վրայ ։ Կը յիշէ իր ազնիւ Խոսրովը՝ որ զինքը երջանիկ ընելու սահմանուած էր, բայց ինքը անմտաբար և անպթաբար մերժած էր զանի ։ Շարունակ ա՜խ Խոսրովս կը գոչէ աղեկտուր . և ահա այդ վերջին պահուն է՝ որ իրեն կ՚աւետեն Խոսրովի ժամանումը ։ Խոսրովն է՝

որ կրօնաւորի տարազով ներս կը մտնէ յանկարծ, ու Մարիի անձկոտ հարցումին, թէ «Խոսրո՞վ կու գայ»... կը պատասխանէ. «Այո՛, ես եմ, Մարի ... բայց իմ անունն ա՛լ Խոսրով չէ, այլ Եղբայր Փելիքս» ...։ Մարիին — ասոր ձեռքէն բռնած — արտասուօք ներումն խնդրելը, Խոսրովին՝ իբրեւ վերջին աւանդ մ՚ալ՝ Մարիէն յանձնուած անմեղ մանուկը գիրկն առնելով օրհնելն ու դառն արտասուքը. Մարիին՝ ջերմ շնորհակալութեամբ իր առաջին ու վերջին բարեկամին ձեռքը բռնելն ու համբուրելը, հօրը և մերձաւորներուն վերջին հրաժարական տալը, ու գլուխը բարձին վրայ հանգչեցնելով հոգին աւանդելը՝ այնքան բնական են և ազեշարժ, որ քար սրտերէն իսկ արտասուք կը քամեն։ Ահա այսպիսի ճարտարութեամբ է, որ Մարիի դժոխքը՝ սիրոյ և խաղաղութեան արքայութեան մը կը փոխէ դարձեալ վիպագիրն։ Այս մասին նկատմամբ աւելորդ կը համարիմ ուրիշ խաղերէն եւս օրինակներ մէջ բերել. զի աւելի կամ պակաս ամենուն մէջ եւս տրուած են հոգեբանական ճիշտ նկարագիրներ անձանց, բնաւորութեանց ու միջավայրին համաձայն։

Մինասեանի թատերախաղերը ոչ պա-

հանջուածէն առնելի ընդարձակ են և ծանրաբեռնիչ, և ոչ ալ ուրիշ շատերու նման չոր ու ցամաք կմախք մը միայն կը ներկայացնեն առաջարկեալ նիւթերուն. այլ ընդհակառակն երկուքին միջասահման տեղին ունին։ Տեսարանաց յարադուարձ փոփոխութիւնք, անձնաւորութեանց բազմութիւնը՝ երկու սեռէն իսկ, ընտանեկան և ընկերական բարդ պարագաներ, ազդու և կենդանի մենախօսութիւններ, սէր, նախանձ և ատելութիւն մէկ կողմէն, և միւս կողմէն ալ երեւակայութեան վսեմ պատկերողութիւններ, մարդկային կրից բուռն զգացմունք, արուեստ, ճաշակ և ճարտասանութիւն իրարու ընկերացած կ'ոգեւորեն, կը կենդանացնեն զանոնք՝ գեղեցկագիտական շպարով։ Եւ որչափ կը յառաջեն դէպ ի վախճանը, այնքան եւս հետաքրքրական և հրահանգիչ կը դառնան։ Տափակ կամ կեղծ խօսակցութիւններու հետ գործ չունի մեր թատերգակը, որոնք կամ ձանձրոյթ և կամ զայրոյթ կը պատճառեն ընթերցողին. այլ ամէն կիրք և շարժմունք բնական կերպով և ուժգնութեամբ մը կը զեղանին անոր մտքէն ու սրտէն, ինչպէս աղբիւրը կուռ ժայռէն. և ահա այս պատճառաւ իսկ յոյժ համակրելի։ Իսկ հեղինակի մտքի

և սրտի համար կարելի է ըսել, թէ ուրիշ բան չեն՝ բայց եթէ բերան մարդկային այն անյատակ կիրքերուն և կարեկցութիւններուն, որոնց ինչպէս լաւ գիտակից է նա, այսպէս ալ ընդունակ արտայայտելու ճըշտութեամբ ու ճաշակով։

Սխալ դատած պիտի ըլլամ զինքը՝ եթէ բոլորովին կլասիկ անուանեմ, և կամ ընդհառակն ռոմանտիք։ Նա երկուքին ալ այնչափ կը մօտենայ կամ կը հեռանայ, որչափ որ հնար է ԺԹ. դարու վերջի կիսում գրողի մը. և այնքան կ'օգտուի անոնցմէ, որքան անկ է երկաքանչիւրին մէջ պարունակուած գեղեցկագիտութեան սիրողի և մշակողի մը։ Իրապաշտի մը չափ բնորոշ է իր դիմագծած նկարագիրներուն մէջ, որ այն ժամանակ — այսինքն 1882 թուականէն յառաջ — Պօլսոյ գրողներէն քիչերուն յատուկ էր. սակայն առանց աւելորդ և անճաշ մանրամասնութեանց մէջ կորսուելու։ Սրտի լեզուն թէպէտեւ մէկ է և պարզ, սակայն Մինասեանի բարբառը ամէն կերպ արձագանգներ հընչեցնելէ չի դադրիր։ Ճշմարտութեան համար այս իսկ ըսելու ենք՝ որ երբեմն երբեմն այդ արձագանգները ու արտայայտութիւնքը իրարու հետ կը թուին նոյնանալ,

և քիչ մ'ալ միակերպ կը դառնան, բայց առանց ճպռան մ'երգի ձանձրոյթը պատճառելու։

Գալով լեզուին՝ արդէն ըսինք, որ բոլոր գրուածներն աշխարհաբար են. բայց ամէնքն ևս ոչ մի օրինակ։ Ոտանաւոր քերթուածները — համեմատութեամբ արձակներուն — քիչ մը գրաբարանակ են. անշուշտ տաղերը աւելի սահուն, շեշտաւոր և կորովի ընելու նպատակաւ։ Այս մասին տարած խնամքն ու փոյթը՝ բառերուն վրայ յետոյ յաւելցուցած յետեւառաջութեան թուանշաններէն և փոքրիկ սրբագրութիւններէն իսկ ակներեւ կը տեսնուի։ Իսկ արձակները — ի բաց առեալ « Ամբակում » կատակերգութիւնը՝ որ Թրքախառն ռամկօրէն է — ամէնքն ալ մաքուր, կանոնաւոր ու նոր գրականութեան յատուկ աշխարհաբարովը կը ներկայանան։ Գրութեան ոճը ամենապարզ է և պայծառ, կտրուկ ու կորովի. Նախադասութիւնները համառօտ են և ազդու։ Բացատրութիւնները յաճախ նոր լեզուներու, և մանաւանդ ֆրանսերէնի, բոլերէն հանուած են և հայացուած. բայց այնպիսի խնամքով և ճարտարութեամբ՝ որ քիչ անգամ խորթ և օտար կը հնչեն ականջաց. և նոր լեզուի հարստութեան

իսկ բազմօք նպաստած և՛ թարմութիւն և նրբութիւն տուած են։ Եթէ ի դէպ է, կոչել Ռուսինեանը — իբր հրապարակախօս և յեղափոխիչ — տաճկահայոց Նազարեանը, և Պէշիքթաշլեանն ալ Նալբանտեան, ես ալ պիտի համարձակէի անուանել Սեպուհ Մինասեանը՝ տաճկահայոց Աբովեանը, գէթ իր դիւցազնական վիպագրութիւններուն համար։ Իրաւ է որ տաճկահայ գրողի փոքրիկ վիպագրութիւններէն ոչ մէկը կարելի և ներելի չէ համեմատել Քանաքեռցի գրողին «Վէրք Հայաստանի» հսկայ վիպագրութեան հետ. սակայն բոլորը ի միասին առած — մանաւանդ իրենց զուտ աշխարհաբար լեզուովն և ոգեւորութեամբը — կը ստեղծեն հեղինակիս համար նման դիրք մ՛արեւմտեայ աշխարհիկ գրականութեան մէջ։ Այս ալ ըսենք՝ որ ասոր ինքնագիր թատերգութիւնները, թարգմանութիւններն ու քերթուածները իրարու վրայ զետեղած՝ գրականական բազմարուեստ ու գեղաքանդակ յօրինուած մը կ՛ունենանք առջեւնիս։

Մինասեանի լեզուի կատարելութիւնները յիշելէն վերջ, պէտք է որ երկու խօսք ալ ըսենք անոր թերութիւններու մասին, ամբողջական գաղափար մը տալու համար։

Արդ՝ առաջին թերութիւնը՝ որ կգալի կ՚ըլլայ, կամ խորթ պիտի հնչէ արդի աշխարհաբառով գրողի մ՚ականջին, են Ա. ի նախդրիւ տրականի և զ հայցականի յաճախ գործածութիւնքը, նաեւ այն տեղեր՝ ուր ոչ միայն ազատութիւն է, այլ և բնաւ հարկ չկայ գործածելու. օր. զեւաց ի տունն, և այլն։ Բ. առ նկատմամբ, նմա պէս, վասն իմ քենէ, և այլն, և այլն, անճիշտ կիրառութիւնները. որոնց սակայն ստանաւորներու անձուկ սահմանին մէջ աւելի կը հանդիպինք, քան թէ արձակներուն։ Գ. ինչ ինչ բառերու մէջ գործած հաստատուն սխալագրութիւնները, որոնք գիպուածով կամ անուշադրութենէ սպրդած չեն կրնար ըլլալ։ Դ. անցողական, չէզոք և կրաւորական բայերու իրարու հետ շփոթելը կամ անյարմար գործածութիւնը. օր. աղագաւ, Զիս մի՛ յուսահատեր, յանցեց, հանդարտէ սիրտդ, և այլն։ Սակայն պէտք եմ յաւելցնել՝ որ այսպիսեաց թիւն իսկ շատ ցանցառ է։ Ե. գրաբառ ոճեր և նախադասութիւններ կը գործածուին երբեք երբեք, որոնք անոր ընդհանուր կերպով ընտանի և նոր լեզուին մէջ հին կարկտաններու պէս կը տեսնուին։ Զ. յաճախ բառերու հայցականն ե՛ւս ուղղա-

կանի պէս և ով կը վերջացնէ փոխանակ ըլթի, և այս նոյն իսկ բաղաձայնով յաջորդող բառերու հանդէպ. որը թէեւ կու տայ մասնաւոր քաղցրութիւն մը լեզուին, բայց կ'ընէ միանգամայն դժուարընթեռնլի։

Արդ՝ դիտելով որ Մինասեանը կը գրէր այնպիսի ժամանակի մը մէջ, երբ աշխարհաբարը դեռ կանոնապէս կազմակերպուած չէր, այլ մեծ և անդորր ծովի մը պէս անոր մէջ կը խաղային մեծամեծ ու մանր հրէշներ՝ յանգուգն և յաւակնոտ ստեղծագործողներու, այն ատեն կրնանք ըսել թէ՝ ոչ միայն կը նուազի անոր թերութեանց հետ՝ նաեւ պատասխանատուութիւնը. այլ իր այդ աշխարհաբարով իսկ երբեմնի Ջերազներէն, Տէմիրճիպաշեաններէն և ուրիշ շատ նորոգողներէն նախադասելի է։

«Գեղամ» վիպագրութեան մէջ արդէն խստիւ քննադատած է Մինասեան նախ լեզուական այն Բաբելոնը՝ զոր կը կառուցանէին իր ժամանակի անձեռնհաս գրչակները, և ուր կը հնչեցնէին իրենց հնարած տարօրինակ քերականութիւնները և աշխարհաբառի չափով և արձակ խղուըրտիւնը. և ապա կը յայտնէ՝ թէ այդ Բաբելոնէն ելնելու համար նախնեաց և Մխիթարեաննե-

րուն հետեւելու է։ Կարեւոր կը համարիմ գէթ մի քանի տող արտագրել անտի, որպէս զի ինքն իր բերնովը խօսի.

«Արդ ազգիս մէջ սակայն պուէտք պակաս չեն,
Աստուած պահէ ոմանց անհարթ, խորթ ոճէն.
Ո՛հ Ապոլոն, քո քընարիդ ա՞յդ էր ձայն,
Կարծեմ երբեմն աշակերտք քո զըռընչան ...։
Կամի՞ք զըստոյգն, զոր ինչ խորհիմ ասացից.
Այն անձինքն որ ի ձեռս բռնեն ըզգրիչ, ...
Պէտք է յօգուտ իւրեանց ազգին նախ ջանան ...
Պէսպէս գրեանք՝ որոնց շատերն անպիտան,
Վերջին օրերս ի մէջ ազգիս ցրուեցան.
Թանաք լըզողը կոչեալ զինք մատենագիր,
Ցանդգնելով հրատարակեց զամէն գիր։
Բայց այդ գրեանքն արդարեւ ցեխ փողոցին,
Զորս թարգմանեալ լեցուն ափով ցրուեցին.
Ազգիս ազնիւ բարոյականն աւերեցին,
Թեթեւամիտ լեցան տուներն խենդերով։ ...
Նախ և առաջ հարկ է կոկել բայց լեզուն,
Զայն դիւրիմաց առնել մըտաց ամէնուն.
Խրթին բառօք, անհարթ ոճով ու մըթին,
Շուտ ընթերցողք ի ձեր գործոց խըլըրտին։
Ունիմք նախնեաց ըզլեզուն լուրջ և ընտիր,
Ընդէ՞ր ապա մոլար կըրից ունկնդիր,
Զայն բարուոքել յանդգնելով միշտ փորձէք.

Ունէ՛ք հանճար, նոցա արժէքն ... ո՛չ երբէք:
Վախեցէ՛ք որ հարք սրտմըտելով ի շիրմէն,
Ըզխորթ զաւակս մեղադրելով չանիծեն:
Ըստ՞ իս՝ ընտրեմ կըլլանել շատ մը գործեր,
Քան ընթեռնուլ աղաւաղեալ ըզգործ ձեր.
Երկաքանչիւրն անխիղճ գրչաւն 'ւ անկրօն
Ձայն խառնակէ, ե՞մք արդեօք ի Բաբելոն:
Մխիթարեանք՝ հայրց մեր որդիք հարազատ,
Արժանաւոր ունին ընտիր գործեր շատ.
Տեսանէք որ օրինակներ ոչ պակսին,
Համեստաբար հետեւեցէ՛ք իւր շաւղին.
Ապա թէ ոչ՝ ի բաց թողեալ ըզգրիչ,
Առէ՛ք ի ձեռս ձեզ վայելուչն ըզբըրիչ»:

Սակայն պէտք եմ — ճշմարտութեան համար — ըսել և այս. այսինքն թէ, նոյն իսկ մեր պուէտը շարունակ յառաջդիմութիւն ըրած չէ աշխարհաբար լեզուին և անոր յատուկ զարգացման մէջ. կամ լաւ եւս՝ այդ յառաջխաղացութիւնն եղած է դէպ ի գրաբարը: Եւ ըսածիս ապացոյց է անոր թատրերգութիւններէն վերջինը, որուն համար ըսուեցաւ՝ թէ 1876ին գրուած է: Այո՛, այս Եղերերգութիւնս՝ անկէ յառաջ — այսինքն է 1857-1870 միջոցին յօրինուածներուն բաղդատութեամբ — շատ գրաբառ-

նակ է, որով խորթ կը հնչէ այսօր մեր ականջաց։ Կարելի է այս երեւոյթը վերագրել նոյն իսկ անոր հասուն հասակին, յորում մարդս բնականաբար կը վերադառնայ իր նախկին լեզուին և ունակութեանց։ Գրաբարասէր կուսակցութենէ աշխարհաբարեաններու դէմ մղուած պայքարին եւս կրնայ արդիւնք համարուիլ այդ, եթէ ստուգիւ անոնց խմբին յարած համարինք զինքը, ինչպէս ինձ հաւանական կը թուի։

Յամենայն դէպս՝ Սեպուհ Մինասեանի թէ՛ թատերական և վիպագրական գործերն, և թէ՛ աշխարհաբար լեզուն՝ որով գրուեցան, իրենց այժմէութիւնը բնաւ կորուսած չեն. այնու մանաւանդ, որ՝ ամէնքն ալ անտիպ մնացեր են և անծանօթ շատերուն։ Անոնք եթէ հրատարակուելու բաղդն ունենան, ոչ միայն բազմաթիւ կարդացողներ պիտի ըլլան, այլ և այսօր աւելի թատերաբեմերու վրայ ներկայացուելու արժանի դասուին, քան այն ժամանակները, երբ նիւթ առնուած անձնաւորութեանց մասին փափկանկատութիւններ կը պահանջուէին։ Ուստի այնպիսի պատուաւոր և օգտակար ծառայութիւն մը մատուցանելու համար թէ՛ հանճարեղ մատենագրին և անոր ազգականաց, և թէ՛